ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12

ԴԵԿՏԵՄԲԵՐ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» («По ленинскому пути») — теоретичесский и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1975 թվականի դեկտեմբերի 1-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը: Պլենումը լսեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը ՍՄԿԿ հերթական XXV համագումարի հարցերի մասին: Պլենումն ընդունեց համապատասխան որոշում, որը հրապարակվում է ստորև:**

**Պլենումը լսեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ, ՍՍՀՄ պետպլանի նախագահ ընկ. Ն. Կ. Բայբակովի զեկուցումը՝ «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976 թվականի պետական պլանի մասին» և ՍՍՀՄ ֆինանսների մինիստր ընկ. Վ. Ֆ. Գարբուզովի զեկուցումը՝ «ՍՍՀՄ 1976 թվականի պետական բյուջեի մասին»:**

**Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը:**

**ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը այդ հարցերի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում, որը նույնպես հրապարակվում է ստորև:**

**Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:**

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

ընդունված 1975 թվականի դեկտեմբերի 1-ին

## ՍՄԿԿ ՀԵՐԹԱԿԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀԱՐՑԵՐԸ

1. Հաստատել ՍՄԿԿ հերթական XXV համագումարի հետևյալ օրակարգը.

1) ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում. զեկուցող՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնև.

2) ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը. զեկուցող՝ վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. Գ. Ֆ. Սիզով.

3) ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունները 1976—1980 թվականներին. զեկուցող՝ ՍՍՀՄ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Ա. Ն. Կոսիգին.

4) Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ:

2. Սահմանել ՍՄԿԿ XXV համագումարում ներկայացուցչության նորման՝ կուսակցության 3.000 անդամից մեկ պատգամավոր:

3. ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավորները, կուսակցության կանոնադրության համաձայն, ընտրվում են փակ (գաղտնի) քվեարկությամբ մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսներում և միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում: Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի և Ղազախստանի կոմկուսներից ՍՄԿԿ համագումարի պատգամավորների ընտրությունները կատարվում են մարզային կուսակցական կոնֆերանսներում:

Սովետական բանակի, ռազմածովային նավատորմի, ներքին և սահմանապահ զորքերի կուսակցական կազմակերպություններում գտնվող կոմունիստները ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավորներ են ընտրում համապատասխան տերիտորիալ կուսակցական կազմակերպությունների հետ միասին մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսներում կամ միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում:

Սովետական բանակի և ռազմածովային նավատորմի արտասահմանում գտնվող զորամասերի կուսակցական կազմակերպությունների կոմունիստները ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավորներ են ընտրում համապատասխան զորամիավորումների կուսակցական կոնֆերանսներում:

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

ընդունված 1975 թվականի դեկտեմբերի 1-ին

## ՍՍՀՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1976 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆԻ ԵՎ ՍՍՀՄ 1976 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

**Հիմնականում հավանություն տալ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976 թվականի պետական պլանի ու ՍՍՀՄ 1976 թվականի պետական բյուջեի նախագծերին և դրանք դնել ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի քննարկմանը:**

---

*Ինֆորմացիոն հաղորդագրություն*

## *ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ*

Դեկտեմբերի 15-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թվականի դեկտեմբերյան պլենումի արդյունքները և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները, որոնք բխում են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառից:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Պլենումը քննարկեց կազմակերպական-քաղաքական միջոցառումների հարցը՝ կապված Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի հետ:

Պլենումը լսեց զեկուցումներ Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման 1976 թվականի պետական պլանի և պետական բյուջեի նախագծերի մասին, որոնցով հանդես եկան Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ, պետպլանի նախագահ ընկ. Ս. Լ. ԹՈՒՄԱՆՅԱՆԸ և հանրապետության ֆինանսների մինիստր ընկ. Զ. Ա. ՋԱՆՈՅԱՆԸ:

Պլենումը քննարկեց Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական՝ XXVI համագումարի հարցերը:

Քննարկված հարցերի վերաբերյալ պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ:

## Հայաստանի կոմկուսի կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը

*ԸՆԴՈՒՆՎԱԾ 1975 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 15-ԻՆ*

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ՀԵՐԹԱԿԱՆ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀԱՐՑԵՐԸ

Հաստատել Հայաստանի կոմկուսի հերթական XXVI համագումարի հետևյալ օրակարգը՝

1. Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը. զեկուցող՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆ:

2. Հայաստանի կոմկուսի վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը. զեկուցող՝ վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. Գ. Ա. ՓԱՀԼԵՎԱՆՅԱՆ:

3. ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները. զեկուցող՝ Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Գ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ:

4. Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի և վերստուգիչ հանձնաժողովի ընտրություններ:

5. ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավորների ընտրություններ:

---

# ՄԵԾ ՍԽՐԱՆՔՆԵՐԻ ՀՆԳԱՄՅԱԿԸ

ՍՆՇԵՂ ՎԵՐԵԼՔ ԱՊՐՈՂ մեր էկոնոմիկան իր հնարավորություն-
ները համամասնորեն ծավալելու համար ընտրել է, եթե կարելի
այսպես ասել, ժամանակը հատվածաբար օգտագործելու հնգամյա սիստեմ: Մեր երկրի
սոցիալ-տնտեսական զարգացման պատմությունը հիմնականում ամփոփված է ժամա-
նակի նման հատվածների մեջ: Յուրաքանչյուր հնգամյա պլան տվյալ շրջանում երկրի
առջև ծառացած սոցիալական, տնտեսական և գիտատեխնիկական խնդիրները մարմ-
նավորում է առաջադրանքների ու միջոցառումների որոշակի համակարգի մեջ, որը.
օրենքի ուժ ստանալով, այնուհետև գործողության մարտական ծրագիր է դառնում կու-
սակցության ու ժողովրդի համար:
Հաշված օրեր են մնում ժողովրդական տնտեսության զարգացման՝ թվով իննե-
րորդ հնգամյակի ավարտին: Երկիրը շուտով հանրագումարի կբերի դրա արդյունքները,
բայց արդեն այժմ վստահորեն կարելի է ասել, որ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվ-
ները հաջողությամբ իրականացված են:
Իններորդ հնգամյակը առանձնահատուկ տեղ է գրավում մեր երկրի սոցիալ-տնտե-
սական զարգացման պատմության մեջ: Այն իր նախադեպը չունի ինչպես առաջադրված ու
ու լուծված խնդիրների մասշտաբներով, այնպես էլ, մասնավորապես, սովետական հասա-
րակարգի տնտեսական, կուլտուրական, սոցիալական առաջընթացի առումով: Նշանակա-
լից էր արդեն այն, որ կուսակցության XXIV համագումարը, որպես հնգամյակի գլխավոր
խնդիր, առաջադրեց ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի զգալի
վերելքի ապահովումը՝ սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի,
նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի և աշխա-
տանքի արտադրողականության աճի արագացման հիման վրա: Ընդ որում, կուսակցու-
թյունը ելնում է այն բանից, որ այդ կուրսը ուղենիշ կլինի ոչ միայն իններորդ հնգամյա-
կի, այլև երկրի տնտեսական զարգացման ընդհանուր երկարատև հեռանկարային կողմ-
նորոշման համար: «Սովետական իշխանության առաջին օրերից մեր կուսակցությունը
և պետությունը այդ ուղղությամբ արել են այն ամենը, ինչ կարողացել են,— ասաց
Լ. Ի. Բրեժնևը:— Սակայն երկար ժամանակ մեր հնարավորությունները, պատմական
հայտնի պատճառներով, սահմանափակ էին: Այժմ դրանք լրջորեն ընդլայնվել են, և դա
կուսակցությանը հիմք է տալիս առաջադրելու այն հարցը, որ տնտեսական շինարարու-
թյունն է՛լ ավելի մեծ չափով նպատակամղվի ժողովրդի կյանքի բարելավմանը» (Լե-
նինյան կուրսով, հ. 3, էջ 320):
Բարեկեցությունը, ինչպես հայտնի է, խիստ կոնկրետ հասկացություն է, և սովե-
տական յուրաքանչյուր ընտանիք, յուրաքանչյուր քաղաքացի այսօր կարող է համադրել
հնգամյա պլանի վերաբերյալ կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներն իրա-
կան կյանքի հետ: Առանց տատանվելու կարելի է ասել, որ դեռ երբեք ժողովրդի կենսա-
մակարդակի բարձրացման խնդիրը այնպիսի խորությամբ ու մասշտաբայնությամբ չի
լուծվել, ինչպես իններորդ հնգամյակում: Բանվորների ու ծառայողների դրույքների և
ռոճիկների ավելացման, աշխատավարձի բարձրացման և այլ միջոցառումների իրակա-
նացման շնորհիվ նկատելիորեն աճել են ավելի քան 75 միլիոն սովետական մարդկանց
ռեալ եկամուտները: 40 միլիոն մարդիկ այժմ ստանում են բարձր կենսաթոշակներ, կըր-
թաթոշակներ, նպաստներ և սպառման հանրային ֆոնդերից տրվող այլ վճարումներ:
Մեր բնակչությունն այսօր շատ ավելի լավ է սնվում ու հագնվում, էապես բարելավվել
են նրա կենցաղի պայմանները: Յուրաքանչյուր ոք այժմ գործնականում զգում է այն
իրողությունը, որ ներկայումս երկրի արդյունաբերությունը անհամեմատ ավելի շատ ու
լավորակ հագուստեղեն, կենցաղային օգտագործման առարկաներ է թողարկում, քան,



ասենք, սրանից մի տասը տարի առաջ, նկատելիորեն ընդլայնվել ու կատարելագործվել է սպասարկման ոլորտը:

Ժողովրդի բարեկեցության այնպիսի մի հիմնական ցուցանիշով, ինչպիսին բնակարանային շինարարության աճի տեմպերն է, մենք վաղուց առաջ ենք անցել տնտեսապես զարգացած կապիտալիստական երկրներից: ՍՍՀՄ-ում ավելի շատ բնակարան է կառուցվում, քան Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում, Իտալիայում և «ընդհանուր շուկայի» մյուս երկրներում՝ միասին վերցրած: Մենք օրինական հպարտությամբ ենք նշում այն փաստը, որ այժմ դպրոցներում, տեխնիկումներում և բուհերում սովորում է սովետական յուրաքանչյուր երրորդ քաղաքացին: Մեր երկրում ավարտվում է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության, իսկ դա այն ցուցանիշն է, որի մեջ իր խտացված արտահայտությունն է գտնում ժողովրդի աննախընթաց կուլտուրական վերելքը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆՆ անմիջականորեն խարսխվում է նյութական արտադրության ասպարեզում մեր երկրի ձեռք բերած նվաճումների վրա: Հայտնի է, որ Վ. Ի. Լենինը սոցիալիզմի տնտեսական շինարարության քաղաքականությունը համարում էր ամենակարևոր ու ամենահետաքրքիր քաղաքականությունը: Նա երջանիկ էր անվանում այն ժամանակը, երբ կուսակցության ու սովետական իշխանության ուշադրության կենտրոնում կգտնվեն երկրի տնտեսական զարգացման հարցերը: Մեզ բախտ է վիճակվել լինելու այդ ժամանակների ականատեսը, երբ լենինյան կուսակցությունը անշեղորեն իրականացնում է երկրի տնտեսական բարգավաճման խորապես գիտական քաղաքականությունը, երբ էկոնոմիկան, իիրավի, դարձել է կուսակցության գլխավոր քաղաքականությունը:

Տնտեսական շինարարության պրոբլեմների գիտական լուծման փայլուն օրինակ տվեց ՍՄԿԿ XXIV համագումարը, որի մշակած տնտեսական քաղաքականությունը համակողմանիորեն հաշվի է առնում զարգացած սոցիալիզմի հնարավորություններն ու խնդիրները և կուսակցությանն ու ժողովրդին կողմնորոշում դեպի արտադրության զարգացման որակական գործոնները: Արդի շրջանում կուսակցությունն իր տնտեսական քաղաքականության բոլոր լծակները ծառայեցնում է սոցիալիստական հասարակարգի առավելությունների է՛լ ավելի լրիվ օգտագործման, հասարակական արտադրության արդյունավետության է՛լ ավելի բարձրացման նպատակին: Իններորդ հնգամյակն այդ քաղաքականության հաղթանակի իսկական վկայությունը հանդիսացավ:

Հնգամյակի տարիները նշանավորվեցին սոցիալական խոշոր տեղաշարժերով, երկրի տնտեսական ու գիտատեխնիկական պոտենցիալի ինտենսիվ ավելացմամբ: Հինգ տարում շարք մտավ շուրջ երկու հազար խոշոր ձեռնարկություն, անցկացվեցին հազարավոր կիլոմետրերով նավթամուղներ ու գազամուղներ:

Մեր պլաններին միշտ բնորոշ է եղել կապիտալ շինարարության վիթխարի թափը: Իններորդ հնգամյակը առանց տատանվելու կարելի է կոչել շինարար հնգամյակ: Արժե լրջորեն խորհել այս թվի մասին. հնգամյակում կապիտալ ներդրումները կազմում են շուրջ 500 միլիարդ ռուբլի... Համեմատության համար նշենք, որ ընդամենը երեքուկես տասնամյակ առաջ մեր երկրի մեկ տարվա կապիտալ ներդրումները չէին անցնում 6,5 միլիարդ ռուբլուց... Իններորդ հնգամյակը, գործարկված օբյեկտներից բացի, գալիք՝ տասներորդ հնգամյակին է հանձնում այնպիսի գիգանտ կառույցների էստաֆետը, ինչպիսիք են Կամայի ավտոգործարանը, Սայանո—Շուշենսկոյեի՝ աշխարհում ամենահզոր էլեկտրակայանը, Բայկալ—Ամուրյան երկաթուղային մագիստրալը, որը կյանքի կկոչի Սիբիրի անսպառ հարստությունները... Երկրի հզոր տնտեսական պոտենցիալի մասին է վկայում այնպիսի վիթխարի ձեռնարկումը, ինչպիսին ՌՍՖՍՀ ոչ-սևահողային գոտու զարգացման կոմպլեքսային պլանի իրականացումն է, որի համար տասներորդ հնգամյակում հատկացվում է 35 միլիարդ ռուբլի:

Կա ընդհանրական մի ցուցանիշ, որով մեծ չափով որոշվում է պլանի կատարումը: Դա արտադրանքի ծավալի աճն է: Նախնական տվյալները հաստատում են, որ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելանալու է 43 տոկոսով, իսկ դա նշանակում է, որ այդ կարևոր բնագավառում հաջողությամբ նվաճվում է պլանով սահմանված բնագիծը: Հնգամյակում մշակվել և ստեղծվել է մեքենաների, սարքավորումների, ապարատների, ավտոմատացման սարքերի ու միջոցների և այլ արտադրատեսակների շուրջ 20 հազար նմուշ: Նկատելիորեն բարձրացել է թողարկվող արտադրանքի

որակը. 1975 թ. հոկտեմբերի 1-ի դրությամբ, 26 հազար արտադրատեսակի շնորհվել է պետական որականիշ: Բարելավվել է արդյունաբերական արտադրության կառուցվածքը, դրանում նկատելիորեն ավելացել է մեքենաշինության, քիմիական արդյունաբերության ու էլեկտրաէներգետիկայի արտադրանքի տեսակարար կշիռը: Էական տեղաշարժեր են կատարվել նաև ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու ասպարեզում: Հատկանշական է, որ արդյունաբերական արտադրանքի աճի 84 տոկոսը ձեռք է բերվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Մեր արդյունաբերությունը հասել է այնպիսի մասշտաբների, երբ մեկ տոկոսով աշխատանքի արտադրողականության բարձրացումը համարժեք է հինգ միլիարդ ռուբլու արտադրանքի թողարկման: Հնգամյակի կարևորագույն արդյունքներից մեկը աշխատանքի արտադրողականության բարձրացման ասպարեզում նվաճված մակարդակն է: Հպարտությամբ կարելի է նշել, որ տնտեսական այդ վճռորոշ ցուցանիշով ՍՍՀՄ-ը առաջատար տեղ է գրավում համաշխարհային էկոնոմիկայում:

Կուսակցությունն առանձնահատուկ կարևորություն է տալիս գյուղատնտեսության զարգացմանը: Եվ դա հասկանալի է. գյուղատնտեսությունը, արդյունաբերական արտադրության հետ միասին, նյութական այն հիմքն է, որի շնորհիվ ապահովվում է բնակչության կենսամակարդակի անշեղ վերելքը: Արդի շրջանում կուսակցության ագրարային քաղաքականությունը, ինչպես հայտնի է, մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումում ու հետագա զարգացում ստացել ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների որոշումներում: Իններորդ հնգամյակում կուսակցությունը հետևողականորեն իրականացնում էր գյուղատնտեսությունն ինդուստրիալ հիմքի վրա փոխադրելու, կոլտնտեսություններն ու սովխոզները տնտեսապես ամրապնդելու երկարաժամկետ ծրագիրը: Հնգամյակում, ինչպես նախատեսված էր ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով, գյուղատնտեսության մեջ ներդրվել է 129 միլիարդ ռուբլի, այնքան, որքան նախորդ երկու հնգամյակում՝ միասին վերցրած: Եվ իրոք, դեռ երբեք գյուղատնտեսությունը այնքան մեծ քանակությամբ տրակտորներ, կոմբայններ, ավտոմեքենաներ, գյուղատնտեսական այլ տեխնիկա, պարարտանյութեր, շինանյութեր, անասնապահական ֆերմաների սարքավորումներ չէր ստացել, որքան իններորդ հնգամյակում: Երկրի ընդհանուր տնտեսական պոտենցիալը հետզհետե ավելի ու ավելի լայնորեն է ի սպաս դրվում գյուղատնտեսության զարգացմանը, դառնում դրա հետագա առաջընթացի որոշիչ գործոնը: Կուսակցության այդ մեծ ջանքերը, անշուշտ, պետք է տային իրենց արդյունքը: Հնգամյակում հացահատիկի տարեկան միջին համախառն բերքը գերազանցեց ութերորդ հնգամյակի ցուցանիշները: Ժամկետից շուտ կատարվեց մսի, թռչնի, ձվի ու բրդի գնումների հնգամյա պլանը: Նախանշված բնագծերը հաջողությամբ նվաճեցին բամբակագործները:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման պլանների անթերի կատարմանը լրջորեն խոչընդոտում էին կլիմայական խիստ անբարենպաստ պայմանները, և այդ հանգամանքը թույլ չտվեց մի շարք ցուցանիշներով հասնել պլանով նախատեսված մակարդակին: Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, սովետական միլիոնավոր մարդկանց անձնվեր աշխատանքը դաժան տարերքի դեմ այն զորեղ հակազդիչները, որոնք զգալի չափով նվազեցրին նրա պատճառած վնասները:

Իններորդ հնգամյակում մեր գյուղատնտեսության մեջ լայն թափ ստացավ ագրարային-արդյունաբերական կոմպլեքսների ստեղծումը: Կյանքը ցույց է տալիս, որ հանրային արտադրության այդ երկու հիմնական ճյուղերի ինտեգրացիան էականորեն նպաստում է աշխատանքի ռացիոնալ կազմակերպմանը և տնտեսավարման արդյունավետության բարձրացմանը: Ագրարային-արդյունաբերական կոոպերացումը ունի նաև սոցիալական լուրջ նշանակություն. այն արագացնում է արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման սոցիալ-տնտեսական պայմանների հավասարեցման պրոցեսը, նպաստում է արտադրաուժերի և աշխատանքային ռեզերվների տեղաբաշխման կատարելագործմանը, գյուղում քաղաքատիպ կենցաղի արմատավորմանը:

ՍՄԿԿ XXIV համագումարը պատմական կարևորություն ունեցող խնդիր համարեց գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների օրգանական միացումը տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելությունների հետ: Ժամանակակից պայմաններում այդ խնդրի լուծումը, իրավի, վիթխարի նշանակություն ունի: Սոցիալիզմը գիտական է արդեն իր իսկ հաստատմամբ ու զարգացմամբ և հենվում է գիտության վրա, իր հերթին գիտությունը չունի ավելի հուսալի հենարան, քան սոցիալիզմը: Այդ է վկայում մարքս-լենինյան տեսությունը, այդ է հաստատում սովետական հասարակարգի ողջ պատմությունը: Մեր տնտեսական դինամիզմին բնորոշ է գիտատեխնիկական արագ առաջընթացը, երկրում ստեղծված է գիտական հզոր պոտենցիալ, որն ունակ է լուծելու գիտատեխնիկական առաջընթացի ամենաբարդ պրոբլեմները: 1974 թ. Սովետական Միությունում կար 1.168 հազար գիտական աշխատող՝ ամբողջ աշխարհի գիտաշխատողների քառորդ մասը: Դա մի ուժ է, որն էական ներգործություն է ունենում մեր առաջընթացի վրա ու դարձել է նրա արագացուցիչը: Գիտական միտքը ժողովրդական տնտեսության զարգացմանը ծառայեցնելու առումով շատ բան արվեց հատկապես իններորդ հնգամյակում: 1971—1974 թթ. մեզ մոտ միջին հաշվով ամեն տարի յուրացվել է 3,4 հազար արդյունաբերական կարևոր արտադրատեսակների արտադրությունը, միաժամանակ արտադրությունից տարեկան հանվել են հնացած կոնստրուկցիաների 1,5 հազար մեքենաներ, սարքավորումներ և այլն: Նախորդ հնգամյակում այդ ցուցանիշները համապատասխանաբար եղել են 1,7 հազար և 0,5 հազար: Ութերորդ հնգամյակում ստեղծվել էր կառավարման 414 ավտոմատացված համակարգ, իսկ իններորդ հնգամյակում՝ 1.629:

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը ստեղծել են բոլոր պայմանները հիմնարար և կիրառական գիտությունների հետագա զարգացման համար, տեխնիկական նոր միջոցների ու տեխնոլոգիական պրոցեսների ստեղծման, արտադրության մեքենայացման, արտադրանքի որակական բնութագրերի բարելավման գործում գիտնականների ակտիվ դերն ապահովելու համար:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ, ԻՆՉՊԵՍ ԵՎ ՄԵՐ ՄԵԾ ՄԻՈՒԹՅԱՆ մյուս հանրապետություններում, իններորդ հնգամյակը նշանավորվեց տնտեսական, կուլտուրական, սոցիալ-հասարակական կյանքի բոլոր ոլորտներում ձեռք բերված լուրջ առաջընթացով: Նախնական արդյունքները վկայում են, որ հնգամյակի տարիներին արդյունաբերական արտադրանքի ծավալը, ամբողջությամբ վերցրած, կավելանա 45 տոկոսով: Հաջողությամբ կատարվում է տնտեսական զարգացման ընդհանրական ցուցանիշներից մեկի՝ ազգային եկամտի աճի վերաբերյալ հնգամյա պլանի առաջադրանքը, 1,4 անգամ կաճեն ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը:

Իններորդ հնգամյակում շարք մտան տասնյակ նոր ձեռնարկություններ ու արտադրամասեր, գործարկվեցին նոր կարողություններ, նկատելիորեն աճեց հանրապետության ընդհանուր տնտեսական հզորությունը: Հնգամյակը ծնունդ է տալիս այնպիսի խոշոր կառույցի, ինչպիսին է Հայաստանի ատոմային էլեկտրակայանը, մեծ ծավալի աշխատանք կատարվեց Արփա—Սևան ջրատարում և հանրապետության այլ կարևորագույն կառույցներում: Ինչպես և նախորդ հնգամյակները, իններորդը նույնպես կհավերժանա իր իսկ թողած կառույցներում: Հնգամյակի չորս տարում շարք են մտել տասնյակ դպրոցներ ու նախադպրոցական հիմնարկներ, հիվանդանոցներ ու կուլտուր-կենցաղային օբյեկտներ, հանրապետության քաղաքներում ու գյուղերում կառուցվել են 6 միլիոն քառ. մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր, իրենց բնակարանամուտն են նշել 557 հազար մարդ կամ հանրապետության յուրաքանչյուր հինգերորդ քաղաքացին: Կենցաղային սպասարկումների իրացման ծավալն ավելացել է 80, իսկ մանրածախ ապրանքաշրջանառությանը՝ 43 տոկոսով: Աճել են բնակչության ռեալ եկամուտները:

Այսպիսին են մեր առաջընթացի մասշտաբները: Հայաստանը, այն նույն Հայաստանը, որտեղ մինչև սովետական կարգերի հաղթանակը ապրում էր ընդամենը 780 հազար մարդ, այժմ շուրջ մեկ միլիոն սովորող ունի: Շուտով այն նույնքան էլ բանվոր ու ծառայող կունենա:

Զգալի են գյուղի աշխատավորների հաջողությունները: Կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ գյուղատնտեսությունը դառնում է սոցիալիստական էկոնոմիկայի բարձր զարգացած սեկտոր: Հնգամյակի տարիներին նկատելիորեն ամրապնդվեց կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական բազան, լայն չափերով իրականացվեցին մելիորատիվ և ջրաշինարարական աշխատանքներ:

Գյուղի աշխատավորների լուրջ նվաճումը պետք է համարել այն, որ նրանք հաջողությամբ կատարեցին պետությանը գյուղատնտեսական մթերքների՝ հացահատիկի,

բանջարեղենի, բոստանային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, մսի, թռչնի, կաթի, ձվի և բրդի հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները: Հինգ տարում գյուղատնտեսական արտադրանքի ծավալն աճել է ավելի քան 20 տոկոսով:

Փաստերը համոզիչ վկայում են, որ մեր հանրապետության աշխատավորները իններորդ հնգամյակի առաջադրանքների իրականացման համար մղած պայքարում մեծ հաջողությունների հասան հատկապես հնգամյակի ավարտական տարում: Եվ դա պատահական չէ: Հանրապետության տնտեսական, սոցիալ-հասարակական կյանքում նոր փուլ նշանավորեց ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումը, որը լենինյան սկզբունքայնությամբ վեր հանեց կուսակցական ու տնտեսական գործունեության ասպարեզում տեղ գտած լուրջ թերությունները, բացահայտեց հանրապետության հասարակական կյանքում արմատակալած, մեր առաջընթացը լրջորեն խոչընդոտող նեգատիվ միտումները և նշեց դրությունը շտկելու, աշխատավորների ուժերը հնգամյա պլանով սահմանված առաջադրանքների իրականացմանը նպատակամղելու միանգամայն կոնստրուկտիվ միջոցառումներ:

Հեշտ ու հարթ չընթացավ հնգամյա պլանի համար հանրապետության աշխատավորների և կուսակցական կազմակերպությունների պայքարը: Նույնիսկ հնգամյակի չորրորդ տարում, երբ արդեն պետք է վճռված լիներ ամբողջ պլանի կատարման բախտը, սահմանված բնագծերից լրջորեն ետ էին մնում այնպիսի կարևորագույն ճյուղեր, ինչպիսիք են էներգետիկան, քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան... Աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը, որով վերջին հաշվով որոշվում է ուզածդ տնտեսական պլանի ճակատագիրը, արդյունաբերության մեջ թերակատարվում էր 12,3, իսկ գյուղատնտեսության մեջ՝ 11 տոկոսով:

Հունվարյան պլենումը հնգամյակի առաջադրանքների կատարման գործում հանրապետության ետ մնալու հիմնական պատճառը համարեց ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման անբավարար մակարդակը, վիթխարի խնդիրների և աշխատանքի ոճի ու մեթոդների միջև առաջացած խզումը, հնգամյակի խիստ լարված տնտեսական շինարարության ծրագիրը կազմակերպական-քաղաքական լայն աշխատանքով չամրապնդելը, պլանավորման գործում դրսևորված վոլյունտարիզմն ու սուբյեկտիվիզմը: Պլենումը կուսակցական, տնտեսական մարմիններից պահանջեց արմատապես բարելավել մեր ամբողջ տնտեսական գործունեությունը, այն բարձրացնել ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների մակարդակին:

Պլենումից հետո հանրապետության կուսակցական ու հասարակական կազմակերպությունները, տնտեսական մարմինները և ձեռնարկությունները մշակեցին ու իրականացրին կոնկրետ միջոցառումներ՝ ժողովրդական տնտեսության զարգացման 1975 թ. պետական պլանը, ամբողջությամբ վերցրած հնգամյակի առաջադրանքները, կատարելու համար:

Երկու գործոն ազդակ՝ ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու նպատակով աշխատավորական կոլեկտիվներին համակած քաղաքական բարձր ակտիվությունը և ՀԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումից հետո տնտեսության կառավարման ոլորտում տեղի ունեցած շրջադարձը պայմանավորեցին այն ընդհանուր վերելքը, որով ավարտական տարին նշանավորում է մեր հանրապետությունը: Հիրավի, 1975 թ. տասն ամիսներին արդյունաբերական արտադրանքի աճի պլանը կատարվել է 103,2, իրացմանը՝ 102,9 տոկոսով: 1974 թ. նույն ժամանակահատվածի համեմատությամբ, արտադրանքի իրացումն ավելացել է 9,2 տոկոսով: Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները տարվա սկզբին պարտավորվել էին 1975 թ. պլանից ավելի թողարկել 60 միլիոն ռուբլու արտադրանք: Արդեն հոկտեմբերի վերջին նրանք իրենց ստանձնած պարտավորությունները գերազանցել էին 41,4 միլիոն ռուբլով:

Ավարտական տարում բարձր ցուցանիշների հասան հանրապետության գյուղատնտեսության աշխատողները, որոնք կատարեցին ու գերակատարեցին գյուղատնտեսական մթերքների հիմնական տեսակների արտադրության ու պետական գնումների առաջադրանքները:

Հնգամյակի նվաճված բարձունքներից պարզորոշ ուրվագծվում են կյանքի բոլոր ոլորտներում մեր հանրապետության աշխատավորների ձեռք բերած ակնառու հաջողությունները: Այդ բարձունքից դժվար չէ նկատել նաև թույլ տրված վրիպումները, թերությունները, սխալները: Գործերը բարվոք չեն կապիտալ շինարարության ասպարեզում,



մեր արդյունաբերության աշխատողները դեռ շատ անելիքներ ունեն ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, արտադրական կարողությունների լիարժեք օգտագործման բնագավառում, բավականաչափ արդյունավետ չէ նաև գյուղատնտեսական արտադրությունը, մեզ չի կարող գոհացնել հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների մակնիշով թողարկվող բազմաթիվ արտադրատեսակների ցածր որակը...

Պետական կարևորության մեծ խնդիր է մեր ամբողջ աշխատանքի որակի բարձրացումը, որը, ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, ժողովրդական տնտեսության զարգացման համար դարձել է առանցքային պրոբլեմ: Դա վերաբերում է և՛ մեր պլանների որակին, և՛ կառավարչական գործունեության որակին, և՛ աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, և՛ թողարկվող արտադրանքի որակի բարելավմանը:

Հայտնի է այն վիթխարի դերը, որ ժողովրդական տնտեսության զարգացման գործում ունի պլանավորումը: Լավ կազմված պլանը, որը համակողմանիորեն հաշվի է առնում տնտեսական, սոցիալական, դեմոգրաֆիական, էկոլոգիական բոլոր գործոնները, մեծապես խթանում է էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացմանը և ինքնին մոբիլիզացնող ուժ ունի: Ցավոք, հանրապետության պլանային մարմինները միշտ չէ, որ ապահովում են պլանավորման գիտական բարձր մակարդակը, պլանների կոմպլեքսայնությունը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների, աշխատանքային ու նյութական ռեսուրսների օգտագործման հնարավորությունը: Նման կարգի վրիպումների հետևանքով երբեմն խախտվում են արտադրաուժերի հավասարաչափ տեղաբաշխման, էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացման սկզբունքները: Բայց նույնիսկ ամենալավ մշակված պլանը կմնա թղթի վրա, եթե դրա իրականացման համար չմոբիլիզացվեն բոլոր ուժերը, եթե դրա կատարումը պարտադիր օրենք չդառնա արտադրության շղթայի յուրաքանչյուր օղակում: Մեր օրերում, ժողովրդատնտեսական վիթխարի պրոբլեմների լուծման ժամանակաշրջանում, առանձին կարևորություն է ստանում պլանային կարգապահությունը: Շղթայի մի օղակում պլանի խախտումը անհետևանք չի մնում ամբողջ արտադրության համար: Հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական մարմիններին պետք է լրջորեն մտահոգի այն փաստը, որ արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ չապահովեցին հնգամյակի առաջադրանքների կատարումը: Մեզ անհրաժեշտ է վճռականորեն ձեռնամուխ լինել կատարողական կարգապահության ամրապնդմանը, սովորել ոչ միայն լավ կառավարել, այլև լավ կառավարվել:

Զարգացած սոցիալիզմի տնտեսական դինամիզմը առավել հստակ արտացոլվում է ժողովրդական տնտեսության կառավարման համակարգի մեջ: Երկրում այժմ արդյունավետ որոնումներ են կատարվում կառավարման որակը բարձրացնելու ոլորտում, և հնգամյակն այդ առումով բավական հարստացրեց սոցիալիստական տնտեսավարման միջոցների ու եղանակների զինանոցը: Մեծ փոփոխություններ են կատարվում մասնավորապես արտադրության կառավարման կազմակերպական կառուցվածքում, մանր ու միջակ բազմաթիվ ձեռնարկությունների բազայի վրա ստեղծվում են արտադրական-տնտեսական կոմպլեքսներ՝ արտադրական միավորումներ, որոնք դառնում են խոշոր արտադրության կազմակերպման հիմնական ձևը: Արդյունաբերական ու գիտա-արտադրական միավորումների, ագրարային-արդյունաբերական ինտեգրացիայի փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ այդ ուղիով կարելի է հասնել կառավարման որակական նոր մակարդակի, ապահովել գիտատեխնիկական առաջընթացի արագ աճը ժողովրդական տնտեսության մեջ: Այս հարցի կարևորության վրա հանրապետության կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների ուշադրությունը բևեռեց ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը (1975 թ.), որը պահանջեց արդյունաբերության կառավարման վերակառուցումը զուգակցել արտադրության համակենտրոնացման մակարդակի բարձրացմամբ, ձեռնարկությունների մասնագիտացմամբ ու կոոպերացմամբ:

Հանրապետության ժողովրդական տնտեսության առջև կանգնած պրոբլեմները հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է ամեն կերպ զարգացնել տնտեսական կադրերի, հատկապես ղեկավար աշխատողների նախաձեռնությունը, նրանց դաստիարակել սոցիալիստական գործարարության ոգով, հարկավոր է ուշի-ուշով հետևել եղբայրական հանրապետություններում ծնված նոր նախաձեռնություններին, առանց հապաղելու դրանք արմատավորել մեզ մոտ: Տնտեսական մարմինների գործունեությունը գնահա-

տելու հարցում, ճիշտ է, այնպիսի մի չափանիշ չկա, որով հնարավոր լիներ հաշվի առնել նաև ծառացած խնդիրների լուծման նկատմամբ ստեղծագործական մոտեցումը, այս կամ այն ղեկավարի ու կոլեկտիվի նախաձեռնողական ակտիվ վերաբերմունքը, բայց դա չի նշանակում, թե կարելի է անվերջ հանդուրժել ղեկավարի իներտությունը, գործերը մի կերպ յոլա տանելու պրակտիկան: Նոր խնդիրները կառավարման որակական նոր մակարդակ են պահանջում: Մենք թևակոխել ենք զարգացման այնպիսի մի փուլ, երբ այլևս չի կարելի հին ձևով աշխատել, անցյալի փորձն այստեղ, Լ. Ի. Բրեժնևի արտահայտությամբ, վատ խորհրդատու է:

Ինչո՞վ բացատրել, օրինակ, որ մեր հանրապետությունում մինչև օրս գործն ըստ էության տեղից չի շարժվում ժողովրդատնտեսական այնպիսի մի հույժ կարևոր խնդրի լուծման ասպարեզում, ինչպիսին կառավարման ավտոմատացված համակարգերի ներդրումն է: Հնգամյակի տարիներին ամբողջ երկրում, ինչպես արդեն նշվեց, ներդրվել է 1.629 այդպիսի համակարգ, որից 463-ը՝ տեխնոլոգիական պրոցեսների համար: Մեր հանրապետության տնտեսական մարմիններն ու գիտահետազոտական հիմնարկները ի՞նչ կարող են դնել պատկառանք ներշնչող այս թվերի կողքին: Հավանաբար՝ միայն ծրագրեր ու նախագծեր: Մեր արդյունաբերությունը լրջորեն ետ է մնում նաև նոր տեխնիկայի ներդրման բնագավառում: Եվ այս ամենը՝ գիտական ամուր բազայի, ինժեներատեխնիկական բարձրորակ կադրերի առկայության պայմաններում... Ասենք ուղղակի՝ անհանգստացնող փաստեր են սրանք:

Հնգամյակի տարիներին մենք վիթխարի կարևորության ժողովրդատնտեսական խնդիրներ ենք լուծել, և այդ բնագավառում կուտակված անգնահատելի փորձը առաջիկայում մեզ դեռ շատ պետք կգա: Ծագել են նաև նոր պրոբլեմներ, ճիշտ է՝ աճման հետ կապված պրոբլեմներ, որոնց ժամանակին նկատելն ու լուծելը մեր կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների պարտքն է:

ԻՆՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՆ ԱՎԱՐՏՎՈՒՄ Է: Ամեն անցնող տարի մեզ մտորումների է մղում: Հնգամյակը՝ առավել ևս: Մեզ՝ սովետական մարդկանց համար, դա ստեղծագործ, հերոսական աշխատանքի փառահեղ հնգամյակ էր: Նրա գլխավոր քաղաքական արդյունքն այն է, որ ապահովվել է, ամբողջությամբ վերցրած, երկրի ժողովրդական տնտեսության դինամիկ զարգացումը, առաջընթաց մեծ քայլ է կատարվել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում: Հինգ տարում մենք դարձանք ավելի հզոր, սովետական ժողովուրդը ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրների իրականացման համար մղած իր հերոսական պայքարով մեկ անգամ ևս ցուցադրեց հարազատ կուսակցության շուրջն իր միաձույլ համախմբվածությունը:

Հարկավոր է շեշտել հատկապես, որ իններորդ հնգամյակը խաղաղ աշխատանքի հնգամյակ էր: Սովետական յուրաքանչյուր քաղաքացի խորապես ըմբռնում է, որ տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում մեր հաջողությունները հնարավոր դարձան միայն կուսակցության XXIV համագումարի մշակած Խաղաղության ծրագրի անշեղ իրականացման, միջազգային լարվածության մեղմացման շնորհիվ: Սովետական «խաղաղ հարձակման» հաղթանակներն այսօր ըստ արժանվույն գնահատում է համայն աշխարհի աշխատավոր մարդկությունը: Դրա փայլուն վկայությունը հանդիսացավ այն միահամուռ ու ջերմ հավանությունը, որով առաջադեմ մարդկությունն ընդունեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևին Խաղաղության կողմնակիցների շարժման բարձրագույն պարգևով՝ Ֆ. Ժոլիո-Կյուրիի անվան «Խաղաղության ոսկե մեդալով» պարգևատրելու լուրը:

Խաղաղության ամրապնդման, միջազգային լարվածության մեղմացման պրոցեսի հետագա խորացման ու զարգացման նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի, անձամբ Լ. Ի. Բրեժնևի գործադրած տիտանական ջանքերը առավել ամրապնդեցին մեր հայրենիքի միջազգային հեղինակությունը:

Ամփոփելով ավարտվող հնգամյակի արդյունքները, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս տեղի ունեցած պլենումում ասաց. «Գլխավորն այն է, և այդ մասին համոզիչ կերպով վկայում է հենց կյանքը, որ իններորդ հնգամյակում տնտեսական զարգացման հիմնական ուղղություններն ու բնույթը լիովին համապատասխանում են ՍՄԿԿ XXIV համագումարի գծին, մեր տնտեսական քաղաքականության սկզբունքային դրույթներին:



Մենք առաջընթաց լավ քայլ կատարեցինք: Եթե նկատի ունենանք հանրային արտադրության բացարձակ աճի մասշտաբները, ապա իններորդ հնգամյակը մեր երկրի պատմության մեջ ամենալավ հնգամյակն է: Մեր հայրենիքը դարձավ է՛լ ավելի հարուստ, է՛լ ավելի հզոր: Սովետական մարդիկ սկսեցին ավելի լավ ապրել: Իսկ դա կուսակցության գործունեության ամենաբարձր գնահատականն է»:

Հիրավի՝ լավ է ասված: Սովետական Հայաստանի աշխատավորները իններորդ հնգամյակը «լավագույն հնգամյակ» կոչելու մի այլ, միանգամայն ծանրակշիռ հիմք ևս ունեն: 1975 թ. սկզբներին ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը, Լ. Ի. Բրեժնևի նախաձեռնությամբ, ընդունեցին «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» պատմական որոշումը, որի նշանակությունը մեր հանրապետության հետագա բարգավաճման գործում, իրոք, դժվար է գերագնահատել: Սովետական Հայաստանի աշխատավորները հարազատ կուսակցության և սովետական պետության այդ մեծ հոգատարությանը կպատասխանեն կոմունիզմի կառուցման գործում իրենց ներդրած նոր ծանրակշիռ ավանդով:

Սովետական ժողովուրդը հիշարժան օրեր է ապրում: Շուտով իններորդ հնգամյակը աշխատանքային էստաֆետը կփոխանցի իր հաջորդին՝ տասներորդին: Մեր ժողովրդական տնտեսության յուրաքան յուր հնգամյակ իր նախորդի տրամաբանական շարունակությունն է ու լրացումը: Այն ազնիվ ու վեհ նպատակները, որ հռչակել էր իններորդը, ուժի մեջ են և գալիք հնգամյակում:

Ամենայն համոզչությամբ այդ է վկայում ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, որը վերջերս հրապարակվեց մամուլում: Համակողմանիորեն մշակված ու հիմնավորված այդ փաստաթուղթը մեր երկրի հետագա առաջընթացի խորապես գիտական ծրագիրն է, որն իր մեջ մարմնավորում է արդի շրջանում կուսակցության տնտեսական քաղաքականության սկզբունքային դրույթները:

Ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման՝ կուսակցության կուրսի հետևողական իրականացումը ՍՄԿԿ Կենտկոմը հռչակել է որպես տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիր: Այդ վսեմ նպատակը պետք է իրականացվի հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման և նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա:

Ելնելով այդ գլխավոր խնդրից, կուսակցությունը պահանջում է ապահովել հանրային արտադրության կայուն աճն ու նրա կառուցվածքային կատարելագործումը, իրականացնել ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման միջոցառումների սիստեմ, ապահովել հանրային արտադրության արդյունավետության ըստ ամենայնի աճը և ինտենսիվացումը, ուժեղացնել խնայողության ռեժիմը ժողովրդական տնտեսության մեջ, արագացնել գիտատեխնիկական առաջընթացի տեմպերը, կատարելագործել ժողովրդական տնտեսության կառավարումը, մշակել և իրականացնել շրջակա միջավայրի պահպանության, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ու դրանց վերարտադրության միջոցառումներ, հետևողականորեն զարգացնել և խորացնել բազմակողմանի համագործակցությունը սոցիալիստական երկրների հետ, նպաստել սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդմանը:

Հնգամյակի ընթացքում, ինչպես այդ սահմանված է նախագծով, արդյունաբերական արտադրանքի արտադրությունը երկրում կմեծանա 35—39, իսկ գյուղատնտեսականը՝ 14—17 տոկոսով: Ինչպես և նախորդ հնգամյակում, արդյունաբերական արտադրանքի ծավալի մեծ աճ է նախատեսվում մեր հանրապետության համար՝ 43—47 տոկոս: Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերության հետագա զարգացումը կուղեկցվի նրա ճյուղային կառուցվածքի կատարելագործմամբ, աշխատատար արտադրությունների տեսակարար կշռի բարձրացմամբ: Նոր ձեռնարկությունները կտեղաբաշխվեն հանրապետության միջին և ոչ մեծ քաղաքներում: Կգործարկվեն Հայաստանի ատոմային էլեկտրակայանի առաջին հերթը և Մասիս—Նուռնուս երկաթուղագիծը, կարագացվի Իջևան—Հրազդան երկաթուղագծի կառուցումը: Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը մեր հանրապետությունում կավելանա 22—25 տոկոսով: Նախատեսվում է ոռոգելի դարձնել ևս 20 հազար հեկտար հողատարածություն:

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի պլենումը, որը տեղի ունեցավ դեկտեմբերի 15-ին, քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թ. դեկտեմբերյան պլենումի արդյունքները և հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրները, որոնք բխում են այդ պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ճառից: Ջերմորեն հավանություն տալով դեկտեմբերյան պլենումի որոշումներին և ընդգծելով այն վիթխարի կարևորությունը, որ սոցիալիստական շինարարության արդի փուլի համար ունեն Լ. Ի. Բրեժնևի ճառի բովանդակած դրույթներն ու հետևությունները, ՀԿԿ Կենտկոմի պլենումը հանրապետության կուսակցական կազմակերպություններին հանձնարարեց այդ դրույթներն ու հետևությունները հասցնել յուրաքանչյուր աշխատավորի, լայնորեն ծավալել հանրապետության աշխատավորների առջև դրված մեծ խնդիրների պարզաբանման պրոպագանդիստական աշխատանքը:

Պլենումը քննարկեց նաև ՍՄԿԿ XXV համագումարին ներկայացվող «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունները» ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի հետ կապված կազմակերպական-քաղաքական միջոցառումների հարցը: Միահամուռ հավանություն տալով տեսական ու գործնական մեծ նշանակություն ունեցող այդ փաստաթղթին, պլենումը ՀԿԿ Կենտկոմի բյուրոյին, կուսակցության քաղկոմներին ու շրջկոմներին հանձնարարեց ապահովել կուսակցական կազմակերպություններում, աշխատավորների ժողովներում և մամուլում նախագծի լայն քննարկումը, պլանաչափ աշխատանք ծավալել նրա բովանդակած տեսական դրույթների ու գործնական խնդիրների պրոպագանդման և պարզաբանման համար:

Երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման, նրա սոցիալ-տնտեսական բարգավաճման համար խոր շահագրգռությամբ մեր հանրապետության աշխատավորներն այս օրերին քաղաքական բարձր ակտիվության մթնոլորտում քննարկում են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թթ. հիմնական ուղղությունների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը: Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ ամենայն խնամքով նախապատրաստել ու անցկացնել այդ քննարկումները աշխատավորական կոլեկտիվներում, հաշվի առնել արված առաջարկություններն ու դիտողությունները, դրանցից առավել արժեքավորների մասին իրազեկ պահել կուսակցական, սովետական, տնտեսական ու պլանային մարմիններին:

Տասներորդ հնգամյակի վիթխարի մասշտաբներն ու գլխավոր խնդիրներն արդեն որոշակիորեն ուրվագծվում են նրա առաջին տարվա պետական պլանում ու պետական բյուջեում: Այդ հնգամյակը, Լ. Ի. Բրեժնևի բնորոշմամբ, պետք է դառնա որակի ու արդյունավետության, ժողովրդի բարեկեցության հետագա աճի հնգամյակ: 1976 թ. պլանն ապահովում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի անշեղ առաջընթացը, երկրի գիտատեխնիկական պոտենցիալի, նրա պաշտպանունակության հետագա հզորացումը, ժողովրդի բարեկեցության մակարդակի բարձրացումը: Հնգամյակի առաջին տարում ՍՍՀՄ ազգային եկամուտը կաճի 5,4 տոկոսով և կկազմի 362 միլիարդ ռուբլի, կապիտալ ներդրումները կավելանան 5,1 տոկոսով և կկազմեն 102,5 միլիարդ ռուբլի: Կարևոր միջոցառումներ են նախատեսվում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման նպատակով:

Սովետական ժողովրդի առջև բացվում են տասներորդ հնգամյակի պայծառ հորիզոնները: Համակված ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու վեհ ձգտումով, մեր ժողովուրդը նոր հնգամյակը կսկսի աշխատանքային նոր սխրանքներով և անթերի կիրագործի այն աշխարհաշեն ծրագիրը, որ առաջադրում է հարազատ կուսակցությունը:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՀՆԳԱՄՅԱԿԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԾՐԱԳԻՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Գ. ՍԱՐԿԻՍՅԱՆՑ**
Տնտեսագիտության դոկտոր

*ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ղեկավարությամբ սովետական ժողովուրդը իրականացրել է վիթխարի սոցիալ-տնտեսական վերափոխություններ, կառուցել զարգացած սոցիալիզմի հասարակարգ: Զարգացած սոցիալիստական հասարակությունը բնորոշվում է սոցիալիզմի առավել ամբողջական դրսևորմամբ:*

*ՍՄԿԿ XXIV համագումարը հռչակեց ժողովրդի բարեկեցությունն էականորեն բարձրացնելու կուրս, դա բնորոշելով ոչ միայն որպես իններորդ հնգամյակի գլխավոր խնդիր, այլև երկրի տնտեսական զարգացման ընդհանուր կողմնորոշում՝ տևական հեռանկարով:*

*Նախատեսելով և հաստատակամորեն կենսագործելով աշխատավորների բարեկեցությունն էականորեն բարձրացնելու կուրսը, կուսակցությունը, ամենից առաջ, ելնում է այն բանից, որ մարդկանց նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավել լիակատար բավարարումը սոցիալիստական հասարակական արտադրության գերագույն նպատակն է: Ընդ որում հաշվի է առնվում, որ երկրի աճող տնտեսական պոտենցիալը հնարավորություն է տալիս միաժամանակ լուծելու արտադրության զարգացման և ժողովրդի բարեկեցության աճման հետ կապված ավելի լայն շրջանակի խնդիրներ: Ընդգծելով այդ պրոցեսների փոխադարձ կապը, կուսակցությունը գտնում է, որ աշխատավոր մարդու բազմակողմանի պահանջմունքների առավել լիակատար բավարարումը հատկապես կարևոր նշանակություն է ստանում արդի գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, երբ անսահմանորեն աճում է հասարակական արտադրության զարգացման սուբյեկտիվ գործոնի դերը: Թե՛ մեր նպատակները, թե՛ աճող տնտեսական պոտենցիալը, թե՛ ժողովրդական տնտեսության զարգացման պահանջմունքները, նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, հնարավոր և անհրաժեշտ են դարձնում էկոնոմիկայի ավելի խոր շրջադարձը ժողովրդի բարեկեցության բարձրացման հետ կապված բազմազան խնդիրների լուծման գործում:*

*ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի 250-ամյակին նվիրված հոբելյանական սեսիայի հանդիսավոր նիստում արտասանած իր ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց, թե հայրենական գիտությունը ինչպիսի հսկայական դեր է խաղում Սովետների երկրի տնտեսական, գիտատեխնիկական կարողությունների բազմապատկման, նոր մարդու ձևավորման, նրա բազմակողմանի զարգացման գործում: Կուսակցությունը սովետական գիտնականներին կոչ է անում նորանոր հաջողությունների հասնել առաջատար գիտական ուղղությունների զարգացման, արտադրական և կուլտուրական ո-*

լորտներում գիտության նվաճումների արմատավորման ասպարեզում, բարձրացնել հետազոտությունների մակարդակը և դրանց արդյունավետությունը։ Պատասխանելով կուսակցության հոգատարությանը, գիտության գործիչները է՛լ ավելի են ամրապնդում գիտության կապը կոմունիստական ստեղծագործական պրակտիկայի հետ, ձգտում ավելացնել իրենց ավանդը մեր Հայրենիքի հետագա բարգավաճման գործում։

Կյանքը համոզիչ հաստատում է կուսակցության XXIV համագումարի մշակած քաղաքական գծի ճշտությունը։ Համագումարի նախանշած բոլոր ուղղություններով լուրջ հաջողություններ են նվաճված։ Սովետական ժողովուրդը խոշոր առաջընթաց քայլ կատարեց կոմունիստական շինարարության ճանապարհին։ Բնութագրելով հնգամյակի սկզբից երկրի անցած ուղին, ընկ. Լ. Ի. Բրեժնևը Մոսկվա քաղաքի Բաումանյան ընտրական օկրուգում, ընտրողների հետ հանդիպման ժամանակ, հայտարարեց. «Դրանք կուսակցության, մեր բանվոր դասակարգի, գյուղատնտեսության աշխատողների, մտավորականության և ամբողջ ժողովրդի լարված ստեղծագործական աշխատանքի տարիներ էին՝ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած պատմական խնդիրների լուծման համար»։

Կուսակցության կանխագծումները, պլանները հաջողությամբ իրականացվում են։ Եվ դա՝ ՍՄԿԿ գիտականորեն հիմնավորված քաղաքականության իրագործելիության պերճախոս վկայությունն է, հասունացած սոցիալիզմի առավելությունների նոր ցայտուն արտահայտությունը։

## ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԵԿԱՄՈՒՏՆԵՐԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՈՒՄԸ

Ժողովրդի բարեկեցության վերելքի սոցիալական ծրագիրը շոշափում է նրա կյանքի բոլոր կողմերը։ Այդ ծրագրի իրացման շնորհիվ կայունորեն աճեցին բնակչության եկամուտներն ու կենսամակարդակը, մեծացան սպառման, կրթության, առողջապահության և սոցիալական ապահովության հասարակական ֆոնդերը, բարելավվեցին բնակարանային պայմանները և ընդլայնվեցին ծառայությունների ոլորտները, վերելք ապրեց սովետական ժողովրդի կուլտուրան։

Երկրի ազգային եկամուտը՝ հասարակական արտադրության աճի ու սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման աղբյուրը, ընթացիկ հնգամյակում կկազմի, ամբողջությամբ վերցրած, մոտավորապես մեկ տրիլիոն 600 մլրդ ռուբլի, որը 35 տոկոսով ավելի է, քան նախորդ հնգամյակում (1965 թ. գներով)։ Սպառման և կուտակման համար օգտագործվող ազգային եկամտի աճը չորս տարում կազմել է 63 մլրդ ռուբլի, որը գերազանցում է 1950 թ. ողջ ազգային եկամտի ծավալը։ Վերջին տասը տարում այն աճել է մոտավորապես երկու անգամ։ Սպառման ֆոնդը, որը կազմում է ազգային եկամտի մոտ երեք քառորդը, իններորդ հնգամյակում ավելի բարձր տեմպերով կաճի կուտակման ֆոնդի համեմատությամբ, որը և նախատեսվում էր կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում։

Ազգային եկամտի ու դրա սպառման նշանակալի աճն արտադրության է՛լ ավելի ինտենսիֆիկացման և արդյունավետության բարձրացման, աշխատանքի արտադրողականության, ժողովրդական տնտեսության կառուցվածքի կատարելագործման արդյունք է։ Հարկավոր է նշել, որ արտադրության արդի հսկայական մասշտաբների պայմաններում աշխատանքի արտադրողականության միայն մեկ տոկոսով բարձրացումը տալիս է 3,8 մլրդ ռուբլի լրացուցիչ ազգային եկամուտ։ Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը պայմաններ է ստեղծում ազգային հարստության չափի և դրանում այն բաժնի ավելացման համար, որը մեր հասարակությունն առանձնացնում է սովետական մարդկանց կյանքի բարելավման նպատակով։ Հենց այդ պատճառով էլ կուսակցությունը հսկայական նշանակություն է տալիս էկոնոմիկայի աճի որակական գործոններին։ Բնակչության կենսամակարդակի բարձրացման նպատակով միայն նոր միջոցառումներ անցկացնելու համար պետությունը 1971—1975 թթ. ներդրել է այնքան միջոցներ, որքան յոթերորդ և ութերորդ հնգամյակներում՝ միասին վերցրած։

Հինգ տարում բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն ավելանում են գրեթե 25 տոկոսով։ Իսկ վերջին տասը տարում դրանք կաճեն մոտավորապես 1,7 անգամ։ Հետզհետե է՛լ ավելի են մոտենում բանվորների ու ծառայողների ռեալ եկամուտների և կոլտնտեսականների եկամուտների մակարդակները։ Ներկայումս կոլտնտեսականների ընտանիքների եկամուտները՝ մեկ շնչի հաշվով, կազմում են սովխոզների բանվոր-ծառայողների ընտանիքների եկամուտների ավելի քան $^9/_{10}$-ը և ժողովրդական տնտեսության բանվորների ու ծառայողների եկամուտների մոտ $^3/_4$-ը։

Բարձրացնելով սովետական մարդկանց եկամուտների մակարդակը, կուսակցությունը հաստատակամորեն հետամուտ է լինում ավելացնելու բնակչության համար ապրանքների արտադրությունը բարելավելու ծառայությունները։ Ընթացիկ հնգամյակի չորս տարում մանրածախ առևտրաշրջանառությունն աճեց 41 մլրդ ռուբլով։ Դա նշանակում է, որ միջին հաշվով չորս հոգուց բաղկացած յուրաքանչյուր ընտանիք սկսել է տարեկան 575 ռուբլու ապրանք ավելի գնել, քան հնգամյակի սկզբում։

Աշխատավորների եկամուտների աճի հետ մեկտեղ բարձրանում է նյութական բարիքների սպառման և ծառայությունների մակարդակը, բարելավվում դրա կառուցվածքը։ Այսպես, իններորդ հնգամյակի առաջին չորս տարում մսի և մսամթերքների սպառումը, բնակչության մեկ շնչի հաշվով, ավելացել է 7 կիլոգրամով, իսկ վերջին ինը տարիներին (1966—1974 թթ.)՝ 14, կաթի և կաթնամթերքների՝ համապատասխանաբար 8 և 64 կիլոգրամով, ձուն՝ 46 և 81 հատով, բանջարաբոստանային կուլտուրաները՝ 5 և 15 կիլոգրամով։ Իսկ հացի և հացամթերքների սպառումը միևնույն ժամանակաշրջանում նվազել է տարեկան 7 և 14, կարտոֆիլինը՝ 11 և 21 կիլոգրամով։

Առանձնապես արագ է աճում բնակչության ապահովվածությունը տևական օգտագործման կուլտուր-կենցաղային նշանակության առարկաներով, որոնք բարելավում և գեղեցկացնում են սովետական մարդկանց կենցաղը։ Ապրանքների քանակի ավելացման հետ միաժամանակ բարելավվում են դրանց տեսականին և որակը։ Դա սովետական մարդկանց բարեկեցության վերելքի հանգուցային պրոբլեմներից մեկն է։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ի զարգացումն կուսակցության XXIV համագումարի դրույթների, ընդունել են մի շարք որոշումներ՝ արտադրանքների որակի և տեսականու արմատական բարելավման, որականիշով ապրանքների թողարկումն զգալիորեն ավելացնելու նպատակով։ Միջոցառումներ են իրականացվում մասսայական պահանջարկի սպառման բարձրորակ ապրանքների և առարկաների թողարկման գործում ձեռնարկությունների շահագրգռությունը բարձրացնելու համար։ Այդ պայմաններում առանձնապես կարևոր է բարձրացնել կուսակցական կազմակերպությունների պահանջկոտությունը տնտեսական կադրերի նկատմամբ՝ ժողովրդական սպառման ապրանքների թողարկման համար։ Արուրքների իրացման ծավալի, տեսականու և անվանացուցակի պլանների կատարումը պահանջում է կուսկազմակերպությունների խստագույն վերահսկողությունը։ Միևնույն ժամանակ պետք է բարձրանա բուն առևտրի ցանցի պահանջկոտությունը արդյունաբերության կողմից մատակարարվող ապրանքների որակի նկատմամբ։

Ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների արտադրությունն ընդլայնելու և արտադրանքի տեսականին նորացնելու խնդրում կարևոր դեր են խաղում ծանր արդյունաբերության ձեռնարկությունները։ Ծանր արդյունաբերությունը տալիս է կուլտուր-կենցաղային և տնտեսական նշանակության առարկաների մոտավորապես երեք քառորդը։ Կարևոր է, որ ծանր ինդուստրիայի յուրաքանչյուր ճյուղում ուժեղացվի վերահսկողությունը թե՛ ըստ իրացման ծավալի, թե՛ ըստ տեսականու, թե՛ արտադրանքների անվանացուցակի պլանների կատարման համար։ Որքան ավելի արդյունավետ օգտագործվեն բնակչության համար ապրանքներ արտադրող ձեռնարկությունների ռեզերվները, այնքան ավելի լիակատար կբավարարվեն սովետական մարդկանց պահանջները։

Արդի պայմաններում բնակչության գնորդական պահանջների ավելի լիակատար բավարարումն առանձին կարևոր նշանակություն ունի թե՛ աշխատա-

վորների կենսամակարդակի բարձրացման, թե հասարակական արտադրության է՛լ ավելի զարգացման, դրա արդյունավետության աճման գործում աշխատավարձի խթանող դերի բարձրացման համար:

Կուսակցությունը ելնում է այն բանից, որ կոմունիզմի շինարարությունը պետք է խարսխվի նյութական շահագրգռության սկզբունքի ըստ ամենայնի օգտագործման վրա: Ըստ աշխատանքի բաշխումը նյութական բարիքների բաշխման հիմնական եղանակն է, որի համաձայն սպառման ֆոնդում աշխատավորի բաժինը սահմանվում է նրա աշխատանքային ավանդին համամասնորեն:

Ներկայումս աշխատանքի վարձատրությունը կազմում է բնակչության բոլոր եկամուտների մոտ երկու երրորդը: Ընդ որում, բանվորների և ծառայողների եկամուտներում այն կազմում է մոտավորապես երեք քառորդը, իսկ կոլտնտեսականների եկամուտներում՝ մոտ կեսը: Իններորդ հնգամյակի չորս տարում բանվորների և ծառայողների աշխատավարձն աճել է ավելի քան 15, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 22 տոկոսով: Կոլտնտեսականների աշխատանքի միջին ամսական վարձատրությունը 1974 թ. կազմել է սովխոզների աշխատողների աշխատավարձի մոտ երեք քառորդը այն դեպքում, երբ 1965 թ. դա հավասար է եղել 68, իսկ 1960 թ.՝ 52 տոկոսի:

Աշխատավորների աշխատավարձն աճում է աշխատանքի արտադրողականության և աշխատողների որակավորման բարձրացման համապատասխան: Ընթացիկ հնգամյակում աշխատավարձի աճը իրագործվում է նաև բանվորների ու ծառայողների դրույքներն ու ռոճիկները բարձրացնելու միջոցով: ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների համապատասխան, աշխատավարձի նվազագույն չափերը բարձրացան ամսական մինչև 70 ռուբլի, երկրի տերիտորիայի մեծ մասում ավելացան նյութական արտադրության՝ միջին վարձատրություն ստացող աշխատողների դրույքներն ու ռոճիկները: Դրա շնորհիվ հնգամյակի ավարտական տարում ժողովրդական տնտեսության բանվոր-ծառայողների ամսական միջին աշխատավարձը կանցնի 144 ռուբլուց՝ 1970 թ. 122 ռուբլու դիմաց: Կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը կկազմի ամսական 96 ռուբլուց ավելի, չհաշված անձնական օժանդակ տնտեսությունից ստացվող եկամուտները:

Բանվորների և ծառայողների դրույքներն ու ռոճիկները բարձրացնելու հետ միասին, որ կիրառվում է ըստ շրջանների, հնգամյակի չորս տարում ամբողջ երկրում բարձրացվել են երկաթուղային տրանսպորտի աշխատողների, ժողովրդական կրթության և առողջապահության որոշ կատեգորիաների աշխատողների աշխատավարձը, գյուղական մեխանիզատորների աշխատանքի վարձատրությունը: Ավելացել է լրացուցիչ վարձատրությունը արդյունաբերության մեջ գիշերային աշխատանքի համար, շրջանային գործակիցներ են կիրառված մի շարք շրջանների բանվորների ու ծառայողների աշխատավարձի նկատմամբ, ավելացել են դրանց չափերը: Աշխատավարձի բարձրացման նպատակով, կենտրոնացված միջոցների շնորհիվ, 1971—1974 թթ. բարձրացել է 47 մլն մարդու, այսինքն՝ յուրաքանչյուր երկրորդ բանվորի և ծառայողի աշխատավարձը:

Նոր դրույքներ ու ռոճիկներ սահմանելու շնորհիվ աշխատանքի վարձատրության հարաբերակցությունները բարելավվում են ո՛չ միայն աշխատանքի բարդության, այլև պայմանների առումով: Կրճատվում են աշխատանքի վարձատրության միջճյուղային, հատկապես, մի կողմից թեթև և սննդի արդյունաբերության, մյուս կողմից՝ ծանր արդյունաբերության մեջ զբաղված բանվորների և ծառայողների աշխատավարձի տարբերությունները:

Դրույքների ու ռոճիկների վերանայումը և բարձրացումը նպաստում են տարիֆային սիստեմի դերի բարձրացմանը աշխատանքի վարձատրության գործում: Աշխատանքի վարձատրության նոր պայմանները հնարավորություն են ընձեռում տեխնիկապես հիմնավորված նորմաների կիրառմամբ զգալիորեն բարելավել աշխատանքի նորմավորումը: Ձեռնարկություններում տնտեսական և կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից մեկն այն է, որպեսզի աշխատանքի վարձատրության նոր պայմաններին անցնելիս տարիֆային սիստեմը և աշխատավարձի կազմակերպումը, ամբողջու-



թյամբ վերցրած, համապատասխանեցվեն ժամանակի պահանջներին, նոր դրույքները, ռոճիկները և նորմաները ամրապնդվեն տեխնիկայի, աշխատանքի կազմակերպման կատարելագործմամբ, այդ հիման վրա ապահովելով աշխատանքի արտադրողականության բարձրացումը և ամբողջ աշխատանքի որակի բարելավումը:

Աշխատանքի վարձատրության և բնակչության մյուս դրամական եկամուտների աճը կենսագործվում է ժողովրդական սպառման ապրանքների մանրածախ գների մակարդակի անփոփոխելիության պայմաններում: Կուսակցությունը վարում է մանրածախ գների մակարդակի կայունացման և, ապրանքային ռեսուրսների կուտակման համեմատ, դրանց իջեցման քաղաքականություն: Մասսայական պահանջարկի հիմնական ապրանքների (հաց, ալյուր, շաքար, ձավար, կաթ, միս), ինչպես նաև կայուն տեսականիի և որակի ոչ մթերային ապրանքների գները երկարատև ժամանակաշրջանի ընթացքում պահպանվում են անփոփոխ մակարդակի վրա: Չեն փոխվում նաև բնակարանավարձի, կոմունալ, տրանսպորտային ծառայությունների դրույքները: Ընթացիկ հնգամյակում իրականացվել է ոչ պարենային ապրանքների առանձին խմբերի մանրածախ գների իջեցում: Պետական մանրածախ գների կայունությունը պահպանվում է բնակչության դրամական եկամուտների զգալի աճի, ինչպես նաև սպառման հասարակական ֆոնդերի և բնակարանային շինարարության համար հատկացումների մեծացման պայմաններում:

Մեզ մոտ կիրառվող գների քաղաքականության առավելություններն առանձնապես ակնհայտ են կապիտալիստական երկրներում ծավալվող չտեսնված ինֆլյացիայի, խոր ճգնաժամի ֆոնի վրա: Արդյունաբերությամբ զարգացած կապիտալիստական երկրներում հաշվվում են մոտ 15 մլն գործազուրկներ: Արագացել է սպառման առարկաների գների աճը: ԱՄՆ-ում, Անգլիայում, Ճապոնիայում և կապիտալիստական որոշ այլ երկրներում 1974 թ. տեղի ունեցավ հետպատերազմյան ժամանակաշրջանում ռեալ աշխատավարձի ամենանշանակալի իջեցումը:

ՍՍՀՄ աշխատավորների ռեալ եկամուտներն աճում են նաև շնորհիվ բնակչությունից գանձվող հարկերի իջեցման և վերացման: ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան, ընթացիկ հնգամյակում աստիճանաբար երկրի շրջաններում վերացվում են ամսական մինչև 70 ռուբլի ստացող բանվորների ու ծառայողների վաստակից գանձվող հարկերը և նվազեցվում են հարկերի դրույքները ամսական մինչև 90 ռուբլի վաստակից: Ընթացիկ հնգամյակում բնակչությունը էական շահումներ է ստանում պետական փոխառությունների պարտատոմսերի մարումից:

## ՍՊԱՌՄԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԸ

Սովետական ժողովրդի բարեկեցության վերելքում հետզհետե աճող դեր են խաղում սպառման հասարակական ֆոնդերը, որոնց աճման տեմպերը նախկինի պես առաջ են անցնում աշխատանքի եկամուտների աճման տեմպերից: Սպառման հասարակական ֆոնդերից արտոնությունների վճարման ծավալը 1974 թ. կազմել է 83 մլրդ ռուբլի, իսկ 1975 թ. այն կհասնի 89 մլրդ ռուբլու, այսինքն, 1970 թ. համեմատությամբ, մոտավորապես 1,4 անգամ ավելի, մի բան, որ համապատասխանում է ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին: Բնակչության մեկ շնչի հաշվով հասարակական ֆոնդերը 1970 թ. 263 ռուբլուց 1974 թ. հասել են 329 ռուբլու:

Այդ աղբյուրի հաշվին ընթացիկ հնգամյակում ավելանում են 40 մլն մարդու կենսաթոշակները, նպաստները, թոշակները և դրամական այլ վճարումներ: Իսկ եթե հաշվի առնենք հասարակական սպառման ֆոնդերից բնակչությանը տրամադրվող անվճար սպասարկումների և արտոնությունների ծավալի նշանակալի աճը, ապա վերջին տարիներին այդ աղբյուրից գործնականորեն էական շահույթ է ստացել սովետական յուրաքանչյուր ընտանիք:

Հիրավի, մեզ մոտ դժվար է գտնել ընտանիքներ, որոնց երեխաները չհա-





ճախեին մանկամսուր կամ մանկապարտեզ, սովորեին դպրոցում, տեխնիկումում, բուհում։ Իսկ դա ի՞նչ է նշանակում։ Չէ՛ որ մեկ դպրոցականի ուսուցման համար հանրակրթական դպրոցում ներկայումս պետությունը ծախսում է տարեկան 120 ռուբլի, տեխնիկումում՝ 500, իսկ բուհում՝ 900 ռուբլի։ Մանկապարտեզում մեկ երեխա պահելու նպատակով ծախսվում է տարեկան 400 ռուբլի, որից մոտ 290 ռուբլին վճարվում է հասարակական ֆոնդերից։ Հնգամյակի տարիներին բարելավվել է բուժսպասարկումը և աճել մյուս ծառայությունների ու արտոնությունների ծավալը։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան, ընթացիկ հնգամյակում հաջողությամբ լուծվում է երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթության անցումն ավարտելու՝ սոցիալական մեծ կարևորության խնդիրը։ 1974 թ. դպրոցներում, պրոֆտեխնիկական և միջնակարգ կրթություն տվող այլ ուսումնական հաստատություններում ուսումը շարունակում էին ութերորդ դասարանների շրջանավարտների 92 տոկոսը։ Չորս տարում երկրում կառուցվել են 5,6 մլն տեղանոց դպրոցական շենքեր, որոնցից երեք քառորդը՝ գյուղական վայրերում։

Ընդհանուր միջնակարգ կրթության անցնելու և ուսուցման որակը բարձրացնելու խնդիրը լուծելու նպատակով տեղերում հսկայական աշխատանք են կատարում կուսկազմակերպությունները։ Հանրապետություններում, երկրամասերում և մարզերում կազմվել են հանրակրթական դպրոցների, տեխնիկումների և պրոֆտեխուսումնարանների շինարարության ու նյութատեխնիկական ամրապնդման հեռանկարային պլաններ։ Կուսկոմիտեների օգնությամբ էականորեն բարձրացել է դպրոցների գործունեության մակարդակը։ Որակյալ բանվորական կադրեր պատրաստելու գործում հետզհետե կարևոր դեր են խաղում պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները, ընդլայնվում է այն ուսումնարանների ցանցը, որոնք բանվորական պրոֆեսիայի հետ միաժամանակ ընդհանուր միջնակարգ կրթություն են տալիս։ Ներկայումս պրոֆտեխնիկական կրթության սիստեմում պատրաստվում է երիտասարդ բանվորների մոտ մեկ երրորդը։

Սոցիալական և գիտատեխնիկական արագընթաց առաջադիմության պայմաններում աճում է բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության դերը բարձրորակ մասնագետներ պատրաստելու գործում։ Ընթացիկ հնգամյակում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում երկու անգամ ավելի մասնագետներ պետք է պատրաստվեն, քան առաջին, երկրորդ, երրորդ և չորրորդ հնգամյակներում՝ միասին վերցրած։ Նշանակալիորեն կընդլայնվի գիտության նոր բնագավառների մասնագետների պատրաստումը։

Աշխատավորական լայն մասսաների կրթական մակարդակի, կուլտուրայի բարձրացումը օրինաչափ պրոցես է։ Բայց դա անհրաժեշտություն է առաջացնում մշտապես բարելավելու աշխատանքի պայմանները, որոնք և կնպաստեն աշխատավորների բազմակողմանի զարգացմանը, նրանց ընդունակությունների ու ստեղծագործական ակտիվության գործադրմանը։ Իրականացնելով ընդհանուր միջնակարգ կրթության ծրագիրը, մենք պետք է ամեն ինչ անենք աշխատանքի բովանդակությունը հարստացնելու, նրա տեխնիկական մակարդակը բարձրացնելու համար։ Նախ և առաջ պետք է կրճատել այն տեղամասերը, ուր կիրառվում են ոչ որակյալ, ձեռքով կատարվող, հատկապես ծանր աշխատանքներ, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման և աշխատանքի կազմակերպումը բարելավելու հիման վրա ուժեղացնել աշխատանքային գործունեության ստեղծագործական բնույթը։

Այդ պրոբլեմների լուծումը ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալական նշանակություն ունի։ Եվ, պատահական չէ, որ դրանք կենտրոնական տեղ են գրավում աշխատանքային կոլեկտիվների սոցիալական զարգացման պլաններում, որպիսիք ծնունդ առան 60-ական թվականների երկրորդ կեսին Լենինգրադում և լայնորեն տարածվեցին իններորդ հնգամյակի տարիներին։ Նշանակալի հաջողություններ են ձեռք բերված քաղաքների, շրջանների և մարզե-



րի զարգացման սոցիալ-տնտեսական համալիրային պլանավորման ասպարեզում։ Այդ առումով մեծ աշխատանք են կատարում Մոսկվայի, Լենինգրադի, Սվերդլովսկի մարզային և այլ խոշոր քաղաքների ու արդյունաբերական կենտրոնների կուսկազմակերպությունները։

Աշխատանքի տեխնիկական հագեցվածության, աշխատավորների հանրակրթական մակարդակի և կուլտուրայի աճը արդի պայմաններում նպաստում է բանվոր դասակարգի մերձեցմանը ինժեներա-տեխնիկական մտավորականությանը, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական հաղթահարմանը, ինչպես նաև գյուղատնտեսական աշխատանքի վերածմանը ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի։ Եթե 1959 թվականին առավելապես ֆիզիկական աշխատանքով զբաղված հազար մարդուց բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն ունեին 322 մարդ, իսկ առավելապես մտավոր աշխատանքով զբաղվածներից՝ 892-ը, ապա 1970 թվականին՝ համապատասխանաբար 540 և 952, իսկ 1975 թվականին՝ 664 և 965 մարդ։ Ընդ որում, բարձրագույն և միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն ունեցող աշխատողների տեսակարար կշիռը 1974 թ. սկզբին բանվորների մեջ կազմել է 68 տոկոս՝ 1959 թ. 40 տոկոսի դիմաց, իսկ կոլտնտեսականների մեջ՝ 49 տոկոս՝ 23-ի դիմաց։

Աշխատանքում տեղի ունեցող վերափոխությունները և բնակչության կրթական մակարդակի բարձրացումը զուգորդվում են արդյունաբերական բանվորների հետ կոլտնտեսային գյուղացիության, սովխոզների բանվորների պրոֆեսիոնալ որակավորման կառուցվածքի մերձեցմամբ, գյուղի մեխանիզատորական կադրերի՝ ինդուստրիալ աշխատանքի մարդկանց արագ աճով։ Դրան նպաստում է գյուղի արտադրաուժերի հանրայնացման մակարդակի բարձրացումը՝ միջկոլտնտեսային, ինչպես նաև խառը միավորումների ստեղծման հիման վրա, որոնք լայնորեն զարգացել են Մոլդավիայում և երկրի մյուս շրջաններում։

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՊԱՀՈՎՈՒԹՅՈՒՆ

Ժողովրդի բարեկեցության նկատմամբ հոգատարությունը՝ հոգատարություն է և նրա առողջության վերաբերյալ։

Ներկայումս երկրում բնակչության բացարձակ մեծամասնության պահանջմունքները լիովին բավարարվում են առողջապահության ծառայություններով։ 1974 թ. յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում էր 31,6 բժիշկ՝ 1965 թ. 23,9-ի դիմաց (կապիտալիստական երկրներում ամենաբարձր ապահովվածությունը կազմում է մոտ 20 բժիշկ՝ 10 հազար բնակչին)։

Վերջին տարիներին բնակչության հիվանդանոցային մահճակալներով ապահովվածությամբ Սովետական Միությունը գրավեց առաջին տեղերից մեկը աշխարհում։ Ընթացիկ հնգամյակում հիվանդանոցային մահճակալների ողջ աճը ձեռք է բերվում բացառապես նոր հիվանդանոցների շինարարության հաշվին։ Կառուցվում են մասնագիտացված և բազմապրոֆիլ խոշոր հիվանդանոցներ, մի հանգամանք, որը հնարավորություն կընձեռի բարձրացնելու բնակչության բուժսպասարկման որակը։ Առողջապահության էլ ավելի զարգացումը, դիսպանսերների շինարարության ընդլայնումը պայմաններ են ստեղծում լուծելու կարևորագույն պրոբլեմներից մեկը— անցումը բնակչության համատարած դիսպանսերացման՝ ինչպես բուժական, այնպես էլ պրոֆիլակտիկ նպատակներով։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը մշտական ուշադրություն են նվիրում մարդկանց աշխատանքի ու կյանքի պայմանների բարելավմանը, հոգատարություն ցուցաբերում շրջապատող միջավայրի պահպանության նկատմամբ։ «Գիտության ու տեխնիկայի բուռն աճը,— նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— առանձնապես հրատապ է դարձնում մարդու և բնության միջև գոյություն ունեցող հարաբերությունների հավերժական պրոբլեմը... Որքան ավելի խելացիորեն օգտագործենք մենք բնության հարստությունները, որքան ավելի մեծ հաջողությունների հասնեն արդյունաբերությունը, գյուղա-

տնտեսությունը, գիտությունը, որքան ավելի բարձր լինի հասարակական աշխատանքի արտադրողականությունը, այնքան հարուստ, գեղեցիկ և կուլտուրական կլինի սովետական մարդկանց կյանքը»:

Կուսակցությունն ու պետությունը նպատակասլաց և հետևողականորեն վճռում են բնության ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու և շրջապատող միջավայրը պահպանելու խնդիրները: Վերջին տարիներին մի շարք կարևոր ակտեր են ընդունվել այդ նպատակով: Այդպիսի ակտերից են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1972 թ. «Բնության պահպանությունն ուժեղացնելու և բնական ռեսուրսների օգտագործումը բարելավելու մասին» որոշումը և ՍՍՀՄ Գերագույն սովետի ընդունած՝ ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների հողային օրենսդրության հիմունքները, ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների ջրային օրենսդրության հիմունքները, «Բնության պահպանության և բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման հետագա բարելավման միջոցառումների մասին», «Ընդերքի պահպանությունն էլ ավելի ուժեղացնելու և օգտակար հանածոների օգտագործումը բարելավելու միջոցառումների մասին» որոշումները և ՍՍՀ Միության ու միութենական հանրապետությունների օրենսդրության հիմունքները ընդերքի վերաբերյալ: Այդ նպատակներով ավելի ու ավելի նշանակալի միջոցներ են առանձնացվում: Շըրջապատող միջավայրի աղտոտությունը կանխելու միջոցառումների համար պետական կապիտալ ներդրումները իններորդ հնգամյակի չորս տարում կազմել են մոտ երեք մլրդ ռուբլի, որը 75 տոկոսով ավելի է ութերորդ հնգամյակի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ:

Դրա հետ մեկտեղ 1971—1974 թվականներին միայն կոլեկտիվ պայմանագրերով աշխատանքի պաշտպանության, հատուկ հագուստի, հատուկ կոշիկի և անհատական պաշտպանության միջոցառումների վրա ծախսվել է 11,5 մլրդ ռուբլի, կամ 1,4 անգամ ավելի, քան ութերորդ հնգամյակի այդ նույն ժամանակաշրջանում: Դրա շնորհիվ այդ ժամանակաշրջանում արտադրական վնասվածքների թիվը կրճատվել է 25 տոկոսով, իսկ պրոֆեսիոնալ հիվանդությունները նվազել են 14 տոկոսով: Սովետական արդյունաբերությունն աչքի է ընկնում արտադրական տրավմատիզմի՝ աշխարհում ամենացածր մակարդակով:

Կոմունիստական կուսակցության ծրագրային խնդիրներից մեկը բոլոր անաշխատունակներին հասարակության խնամքի տակ վերցնելն է: Զարգացած սոցիալիզմի պայմաններում նշանակալիորեն բարձրանում է նրանց սոցիալական ապահովության մակարդակը: Կենսաթոշակառուների թիվը 1975 թ. սկըզբին կազմել է 44,3 մլն մարդ՝ 1966 թ. 32 մլն-ի դիմաց: Ներկայումս սոցիալական ապահովության համար օգտագործվում է սպառման բոլոր հասարակական ֆոնդերի մոտ մեկ երրորդը: Այդ միջոցների հաշվին բարձրացվել է կենսաթոշակների, հատկապես նվազագույն կենսաթոշակների մակարդակը, ապահովվել անհրաժեշտ համապատասխանություն տարբեր կատեգորիաների (ծերության, հաշմանդամության, կերակրողին կորցնելու դեպքում) կենսաթոշակների չափերի միջև. մերձեցվել են բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովության մակարդակները:

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան, 1971 թ. բարձրացվել են բանվորների ու ծառայողների ծերության, կոլտնտեսականների ծերության, հաշմանդամության և կերակրողին կորցնելու դեպքում սահմանվող կենսաթոշակների նվազագույն չափերը: Կոլտնտեսականների վրա տարածվել են բանվորների ու ծառայողների և նրանց ընտանիքների համար սահմանված կենսաթոշակների հաշվարկման պայմանները: 1973 թ. դեկտեմբերից բարձրացվել են կերակրողին կորցրած զինծառայողների ընտանիքների կենսաթոշակները, իսկ 1974 թ. դեկտեմբերից՝ կերակրողին կորցրած մնացած ընտանիքների, ինչպես նաև հաշմանդամների կենսաթոշակները: 1975 թ. միջոցներ են ձեռնարկված Հայրենական պատերազմի հաշմանդամների և զոհված ռազմիկների ընտանիքների կենսաթոշակներն ավելացնելու և նյութական դրությունը բարելավելու նպատակով: Կենսաթոշակային ապահովությունը բարելավելու համար ընթացիկ հնգամյակում առանձնացված են 2,5 անգամ ավելի



միջոցներ, քան նախորդ հնգամյակում: Այդ ամենի շնորհիվ իններորդ հնգամյակում բարելավվել է 24 մլն կենսաթոշակառուների նյութական դրությունը:

Կուսակցությունը հսկայական նշանակություն է տալիս աճող սերնդի դաստիարակության և հասարակության հաշվին երեխաների նյութական ապահովության պայմանների բարելավմանը: Այդ խնդիրների լուծմանը նպաստում են երեխաների՝ հասարակայնորեն կազմակերպված սպասարկման բազմապիսի ձևերի լայն զարգացումն ու երեխաներ ունեցող ընտանիքների նյութական օգնության ընդլայնումը, մատաղ սերնդին սպառման հասարակական ֆոնդերի հաշվին արտոնություններ ու դրամական վճարումներ տալու սիստեմի կատարելագործումը:

1974 թ. մանկական նախադպրոցական հիմնարկություններում դաստիարակվում էին 11 մլն երեխաներ, քաղաքային և քաղաքատիպ ավաններում այդ հիմնարկություններն ընդգրկել էին նախադպրոցական հասակի բոլոր երեխաների մոտ կեսը: Երկրի շատ քաղաքներում այդ բնագավառում բնակչության պահանջները լիովին բավարարված են:

Երեխաներին սպասարկելու հասարակական ձևերի զարգացումը հնարավորություն է տալիս ավելի ու ավելի մեծ չափով զուգակցել նրանց հասարակական դաստիարակությունն ու կրթությունը: Դրա հետ մեկտեղ, այդ հանգամանքը կանանց ազատում է տնային տնտեսությունում զգալի ուժեր ծախսելուց և ընդլայնում հասարակական արտադրությանը նրանց մասնակցության հնարավորությունները:

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան, 1974 թ. նոյեմբերին նպաստներ են հատկացված այն ընտանիքների երեխաներին, որոնցում յուրաքանչյուր անդամին ընկնող միջին եկամուտը ամսական 50 ռուբլուց ավելի չէ: Նպաստների նոր սիստեմը նախատեսում է դրանց վճարումը՝ ընտանիքի եկամուտների մակարդակից ելնելով: Այդպիսի կենսաթոշակ սահմանելը աշխատավարձի նվազագույնից ընտանիքի եկամուտների երաշխավորված նվազագույնի անցնելու կարևոր պայմաններից մեկն է:

Իններորդ հնգամյակում կարևոր միջոցառումներ են կենսագործված սովորող երիտասարդության նյութական դրության բարելավման նպատակով: Բարձրացված են (25—50 տոկոսով) բուհերի ուսանողների, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում և պրոֆտեխնիկական ուսումնարաններում սովորողների թոշակները, պրոֆտեխուսումնարաններում ավելացված են սննդի վրա կատարվող ծախսերի նորմաները:

Երեխաներ ունեցող ընտանիքներին ցույց տրվող նյութական օգնությունն ընդլայնելու և աճող սերնդի դաստիարակության համար ավելի բարենպաստ պայմաններ ստեղծելու հետ մեկտեղ իններորդ հնգամյակում մի շարք միջոցներ են իրականացվել՝ բարելավելու բանվորների ու ծառայողների ընդհանուր թվի 51 տոկոսը կազմող կանանց աշխատանքի և կենցաղի պայմանները: Քիչ բան չի արված կանանց աշխատանքի պայմանները թեթևացնելու և բարելավելու ասպարեզում: Զգալիորեն ավելացել է ուսուցիչների, բժիշկների և նախադպրոցական հիմնարկությունների դաստիարակների աշխատավարձը: Աշխատող բոլոր կանանց համար սահմանվել է հղիության և ծննդաբերության արձակուրդի 100 տոկոսային վճարում՝ անկախ նրանց աշխատանքի ստաժից: Ավելացել է հիվանդ երեխաներին խնամելու համար նպաստների վճարման տևողությունը:

## ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ: ՍՊԱՍԱՐԿՄԱՆ ՈԼՈՐՏ

ՍՍՀՄ-ը աշխարհում առաջին տեղն է գրավում (հազար բնակչի հաշվով) կառուցվող բնակարանների քանակով: Զգալիորեն մեծանում են բնակարանային շինարարության մասշտաբները: Բավական է նշել, որ իններորդ հնգամյակում ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին կառուցվում են ընդհանուր տարածությամբ 1,5 անգամ ավելի բնակելի տներ, քան առաջին, երկրորդ, երրորդ և չորրորդ հնգամյակներում՝ միասին վերցրած: Հինգ տարում բնակարանային շինարարության համար ներդրվում է ավելի քան 75 մլրդ ռուբլի, մի բան,

որ հնարավորություն է տալիս բարելավելու 56 մլն մարդու բնակարանային պայմանները։

Բնակարանային շինարարությունը և բնակելի ֆոնդի պահպանումը, ինչպես և նախկինում էր, գերազանցապես իրականացվում են պետության միջոցների հաշվին։ 1974 թ. բնակելի ֆոնդի կառուցման և պահպանման վրա կապիտալ ներդրումների և ընթացիկ ծախսերի ընդհանուր գումարում պետական միջոցների բաժինը կազմել է 80 տոկոս, իսկ բնակչության միջոցների բաժինը՝ 20 տոկոս։ Բնակելի ֆոնդի պահպանման ծախսերի երկու երրորդը ներդրվում է սպառման հասարակական ֆոնդերի հաշվին և սոսկ մեկ երրորդը՝ բնակարանավարձի հաշվին։ Ինչպես հայտնի է, մեր երկրում բնակարանավարձը սահմանվել է 1928 թվականին և այդ պահից ի վեր չի ավելացել։ Բանվորների և ծառայողների ընտանիքների բյուջեում բնակվարձը կազմում է մոտ մեկ տոկոս, իսկ կոմունալ ծառայությունների հետ միասին՝ մոտավորապես 4 տոկոս, այն ժամանակ, երբ կապիտալիստական շատ երկրներում աշխատավորների բյուջեում բնակարանի և կոմունալ ծառայությունների համար կատարվող ծախսերը հասնում են 20—25 տոկոսի։

Ներկայումս երկրում հաջողությամբ լուծվում է մեկուսացած բնակարաններ բաշխելու պրոբլեմը։ Նոր բնակարանների ավելի քան 90 տոկոսը հատկացվում է առանձին ընտանիքների, այն դեպքում, երբ 50-ական թվականներին միայն 30 տոկոսն էին առանձին բնակարաններ ստանում։ 1974 թ. բանվորների և ծառայողների 70 տոկոսից ավելին ապրում էր առանձին բնակարաններում։

Կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն միջոցներ է կենսագործում սովետական յուրաքանչյուր ընտանիքի առանձին բնակարանով ապահովելու համար։

Մեծ աշխատանք է կատարվում քաղաքներն ու գյուղերը վերակառուցելու, բնակարանների որակը բարձրացնելու, դրանք բարեկարգ դարձնելու նպատակով։

Վերջերս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ 1969 թ. մայիսին ընդունած «Քաղաքացիական-բնակարանային շինարարության որակը բարելավելու միջոցառումների մասին» որոշումը կատարելու ընթացքը։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն միջոցառումներ նշեց բնակելի տների և կուլտուր-կենցաղային նշանակության օբյեկտների շինարարության որակն է՛լ ավելի բարելավելու, ինդուստրիալ բնակարանաշինարարության բազան ամրապնդելու, այդ նպատակների համար կապիտալ ներդրումների արդյունավետությունը բարձրացնելու և շինարարական կազմակերպությունների աշխատողների պատասխանատվությունն ուժեղացնելու համար։

Տնտեսական և սոցիալական առաջընթացը անխզելիորեն կապված է բնակչության սպասարկման և աշխատավորների կենցաղի բարելավման ոլորտների հետ։ Արդի փուլում հետևողականորեն լուծվում է ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խնդիրը՝ սպասարկման ոլորտը դարձնել ժողովրդական տնտեսության այնպիսի ճյուղ, որը լիովին համապատասխանի այսօրվա պահանջներին, նպաստի աշխատավորների ազատ ժամանակի ավելացմանը և տնային աշխատանքի թեթևացմանը։

Այդ գործում հետզհետե մեծ տեղ են գրավում անմիջականորեն բնակչությանն սպասարկող և սովետական մարդկանց նյութական պահանջմունքների ավելի լիակատար բավարարման հետ կապված ճյուղերը՝ առևտուրը, հասարակական սնունդը, կենցաղսպասարկումը։ Դրանցում զբաղված է ավելի քան 10 մլն մարդ։ Հասկանալի է, որ դրանց աշխատանքի արդյունավետությամբ շատ բանով պայմանավորված է բոլոր կատեգորիաների աշխատավորների ազատ ժամանակի պրակտիկ օգտագործումը։ Առևտրում և կենցաղսպասարկման ոլորտում կադրերի ընտրությունը, բաշխումը և դաստիարակությունը, սպասարկման գործում բարձր կուլտուրայի ապահովումը կուսակցական կազմակերպությունների կարևորագույն խնդիրներից են։



Ներկայումս առևտրի միջոցով է իրացվում անձնական սպառմանը ծառայող բոլոր նյութական բարիքների գերակշռող զանգվածը։ Իններորդ հնգամյակի չորս տարիներին մանրածախ առևտրի ապրանքաշրջանառությունն ավելացել է գրեթե 1,3 անգամ, իսկ վերջին տասը տարում՝ մոտավորապես երկու անգամ։

Հասարակական սննդի ապրանքաշրջանառությունը 1971—1974 թվականներին աճել է 22 տոկոսով, իսկ վերջին տասը տարում՝ գրեթե կրկնակի։ Հասարակական սննդի ձեռնարկություններում նստելատեղերի աճը ութերորդ և իններորդ հնգամյակների տարիներին մոտավորապես 1,5 անգամ գերազանցում է 1960 թ. նստելատեղերի թվին։ Միայն բանվորական ճաշարաններում տեղերի թիվը 1971—1974 թթ. աճել է ավելի քան 1,4 միլիոնով։ Մեր երկրում յուրաքանչյուր օր մոտ 85 մլն մարդ այցելում է ճաշարաններ, սրճարաններ, նախաճաշարաններ։

ՍՄԿԿ XXIV համագումարում և կուսակցության Կենտկոմի հետագա մի շարք որոշումներում մատնանշվեց բնակչության պահանջարկն ավելի խորապես ուսումնասիրելու, մարդկանց պահանջմունքների ու ճաշակների փոփոխությունների նկատմամբ պատշաճ գործնականություն դրսևորելու անհրաժեշտությունը։ Կիրովի մարզի սպասարկման ոլորտի կոլեկտիվներում կուսակցական-քաղաքական և դաստիարակչական աշխատանքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է, որ կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները վերջին տարիներին մի շարք միջոցառումներ են իրականացրել ապրանքների ու սպասարկումների նկատմամբ բնակչության պահանջարկն ավելի լիովին բավարարելու համար։ Դրա հետ մեկտեղ այդ գործում շատ թերություններ կան։ Դրանցից գլխավորն այն է, որ անբավարար է ուսումնասիրվում պահանջարկը, և որ արտադրությունը, իսկ հաճախ նաև առևտուրը, դանդաղ են կողմնորոշվում գնորդների պահանջարկի մեջ մշտապես տեղի ունեցող փոփոխությունների նկատմամբ։

Բնակչության պահանջարկը ո՛չ միայն ընդհանուր ծավալով, այլև, որ առանձնապես կարևոր է, սովետական մարդկանց արագ աճող պահանջմունքներին համապատասխան ապրանքների ասորտիմենտով և որակով ավելի լրիվ բավարարելը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի տնտեսական ու կուսակցական կազմակերպությունների կարևոր խնդիրներից մեկն է։

Բնակչության կենցաղսպասարկումը դարձել է ժողովրդական տնտեսության ինդուստրիալ զարգացած ճյուղ։ Կենցաղսպասարկման ձեռնարկությունները ներկայումս բնակչությանը մոտ 600 տեսակի ծառայություն են մատուցում։ Կենցաղային ծառայությունների ծավալը իններորդ հնգամյակի չորս տարում մեծացել է՝ քաղաքում 1,4, և գյուղում՝ 1,7 անգամ։

Բնակչության կենսամակարդակի աճման և նրա սպասարկման ճյուղերի զարգացումն արագացնելու կապակցությամբ ավելանում են այդ նպատակներով կատարվող ծախսերը և դրանց բաժինը ընտանիքների բյուջեներում։

* * *

Կոմունիստական կուսակցությունը հետևողականորեն անց է կացնում ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու կուրս։ Մարդկանց նյութական և կուլտուրական կենսամակարդակի հետագա վերելքը կախված կլինի մեր աշխատանքային հաջողություններից, առաջին հերթին՝ արտադրության արդյունավետության բարձրացումից ու արտադրանքի որակի բարելավումից։ Բացահայտելով առաջիկա տասներորդ հնգամյակի առանձնահատկությունները, ընկեր Լ. Ի. Բրեժնևը Մոլդավիայում արտասանած իր ճառում նշեց, որ այդ հնգամյակը կլինի որակի, արդյունավետության հնգամյակ՝ հանուն ժողովրդի բարեկեցության հետագա աճի։ ՍՄԿԿ հերթական XXV համագումարը կորոշի երկրի էկոնոմիկայի և սովետական ժողովրդի բարեկեցության հետագա վերելքի հեռանկարները։

«Партийная жизнь», № 20. 1975.

# ՆՈՐ ՄՏԱՀՂԱՑՈՒՄՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ՀՈՒՆՈՎ

**ՅԱ. Ի. ԽԱՉԻԿՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի դիրեկտոր, փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ այն պրոցեսները, որ տեղի են ունենում զարգացած սոցիալիստական հասարակարգում, կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմները և նոր հասարակարգի կառուցման ասպարեզում ձեռք բերված պատմական նվաճումներն իրենց վրա են բևեռում սովետական հասարակագետների սևեռուն ուշադրությունը: Կյանքը նրանց առջև դրել է վիթխարի կարևորության մի խնդիր՝ համակողմանիորեն հետազոտել և տեսականորեն հիմնավորել ու իմաստավորել սովետական հասարակարգի տնտեսական ու սոցիալական պրոբլեմները, զարգացած սոցիալիզմի օրինաչափությունները, ի հայտ բերել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և աշխատավորների կոմունիստական դաստիարակության առավել արդյունավետ ուղիներ:

Այս խնդիրների լուծման գործում առաջատար դեր ունեն սովետական փիլիսոփաները: Խորապես ճանաչելով հասարակական առաջընթացի օբյեկտիվ օրենքները, հենվելով բնական ու տեխնիկական գիտությունների նվաճումների վրա, նրանք ջանում են մշակել հետագա զարգացման գիտական կոնցեպցիաները, առաջադրել կոմունիստական հասարակարգի կառուցման վիթխարի խնդիրների իրագործման առավել ռացիոնալ լուծումներ: Սովետական փիլիսոփաների համար գործողության մարտական ծրագիր են կուսակցության XXIV համագումարի, ինչպես նաև հասարակական գիտությունների հետագա զարգացման ու կոմունիստական շինարարության գործում դրանց դերի բարձրացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները: Արդի շրջանում մեր փիլիսոփաների առջև ծառացած կարևորագույն խնդիրներին էր նվիրված 1975 թ. սեպտեմբերի 19-ին «Պրավդա» թերթում հրապարակված «Սովետական փիլիսոփաների վսեմ պարտքը» վերնագրով խմբագրական հոդվածը, որը մեծ հետաքրքրությամբ ընդունվեց երկրի փիլիսոփայական հասարակայնության կողմից:

Հոդվածը համակողմանիորեն քննարկվեց երկրի ակադեմիական փիլիսոփայական ինստիտուտներում, բուհերի փիլիսոփայական ամբիոններում, ՍՍՀՄ փիլիսոփայական ընկերության հանրապետական և մարզային բաժանմունքների ընդհանուր ժողովներում, ինչպես նաև նույն ընկերության վարչության չորրորդ պլենումում: Այդ քննարկումների յուրահատուկ ընդհանրացումը կատարվեց ՍՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի գիտական խորհրդի ընդլայնված նիստում, որը, ըստ էության, վերածվեց համամիութենական խորհրդակցության, քանի որ այնտեղ ներկայացված էին բոլոր միութենական հանրապետությունների փիլիսոփայական ինստիտուտները:

1947 թ. համամիութենական փիլիսոփայական դիսկուսիան, չնայած այն ժամանակ առկա դոգմատիզմով պայմանավորված որոշ թերություններին, ամբողջությամբ վերցրած, անվիճելի դրական դեր կատարեց, լրջորեն նպաստելով նախ՝ փիլիսոփայական կադրերի քանակական աճին և երկրորդ՝ փիլիսոփայական գիտությունների բոլոր ոլորտներում հետազոտական աշխատանքների ծավալմանը:

1953 թ. հետո փիլիսոփայական գիտության շարունակվող զարգացման շնորհիվ սկսվում է աստիճանաբար հաղթահարվել դոգմատիզմի ազդեցությունը: Այդ պրոցեսի արագացման համար հետագայում լուրջ խթան հանդիսացան կուսակցական կարևոր փաստաթղթերը՝ հատկապես ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների ու ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, ինչպես նաև «Հասարակական գիտությունների հետագա զարգացման ու կոմունիստական շինարարության մեջ դրանց դերի բարձրացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը:

Եթե փորձենք հակիրճ սահմանել կուսակցական փաստաթղթերում առաջադրված պահանջների էությունն ու ոգին, ապա պետք է նախ և առաջ շեշտել հետևյալ երկու մոմենտները՝ 1) փիլիսոփայական գիտությունը զարգացնել խորությամբ և առավելագույն չափով մոտեցնել հրատապ, կենսականորեն կարևոր պրոբլեմների վերլուծությանը, 2) ամեն կերպ բարձրացնել հետազոտությունների որակը:

Եվ իրոք, այժմ, երբ գոյություն ունի փիլիսոփաների մի պատկառելի բանակ (երկրում փիլիսոփայությամբ զբաղվում են մոտ 14 հազար մասնագետներ), խոսքը վերաբերում է հարցերի տեսական խոր մշակման, քանի որ դրանց ընդհանուր լայն ընդգրկումն արդեն վաղուց է կատարվել: Միաժամանակ խնդիր է դրվում փիլիսոփայական գիտության մեջ գոյություն ունեցող դրության հավասարեցման, փիլիսոփայական գիտելիքի բոլոր բնագավառների համաչափ զարգացման մասին:

Ինչպես հայտնի է, վերջին տասնամյակներին առավել հաջողությամբ զարգանում էր բնագիտության փիլիսոփայական հարցերի և գիտության մեթոդաբանական պրոբլեմների հետազոտությունը, մինչդեռ դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի արմատական հարցերի մշակումն իր տեսական մակարդակով ետ էր մնում կյանքի պահանջներից: Փիլիսոփայական բոլոր հետազոտությունների հակվածությունը կյանքի թելադրած պրոբլեմների կողմը՝ այդ հետազոտությունների օգտակար գործողության գործակիցը բարձրացնելու ռեալ ուղին է, փիլիսոփայության ստեղծագործական զարգացման, դոգմատիզմի և միապաղաղ կրկնությունների հաղթահարման ուղին: «Պրավդայի» հոդվածն ուղղակիորեն կոչ է անում՝ «ավելի ակտիվ պայքար մղել գիտական աշխատանքի նկատմամբ մակերեսային, կոմպիլյատիվ մոտեցման դրսևորումների դեմ»:

Հատուկ նշանակություն ունի ամբողջ հոդվածով կարմիր թելի պես անցնող պահանջը՝ ըստ ամենայնի բարձրացնել փիլիսոփայական աշխատությունների գաղափարա-տեսական որակը: Այժմ փիլիսոփաներին առաջադրվող խնդիրների մեջ կարևորվում են հատկապես գիտահետազոտական աշխատանքների որակի նկատմամբ պահանջկոտության բարձրացումը, հիմնարար հետազոտությունների տեսակարար կշռի նշանակալի ավելացումը: Միանգամայն տեղին է այն կարևոր հարցադրումը, որ հիմնարարություն ասելով պետք է հասկանալ «ոչ թե հրատարակությունների ծավալը և բազմահատորությունը, այլ դրանցում պարունակվող նոր գիտելիքների աճը, մինչ այժմ անհայտ օրինաչափությունների կամ նկրտումների վերհանումը, գիտության կուտակած տեսական և փաստական նյութի խոր ընդհանրացումները»:

Այս առնչությամբ կցանկանայինք շեշտել այն նշանակությունը, որ ունեն ծավալով փոքր, բայց բովանդակությամբ խոր գիտական հոդվածները, որոնց խրախուսումը և տեսական կշռի մեծացումը, անտարակույս, կնպաստեն հետազոտությունների մակարդակի ընդհանուր բարձրացմանը և ըստ կարելվույն կփոխեն հասարակական կարծիքը հօգուտ հետաքրքրական բովանդակալի հոդվածների՝ ի հակակշիռ լայնորեն արմատացած ծավալամոլության, որի ար-

դյունքն են հաճախակի դարձած՝ սավար, բայց աղքատիկ մենագրությունները։

Եթե սրան ավելացնենք մարքս-լենինյան փիլիսոփայության ակնհայտ դասակարգային, կուսակցական կողմնորոշումը և դրա սոցիալական գլխավոր խնդիրների որոշակիությունը, ապա փիլիսոփայության բնագավառի գիտական հետազոտությունների չափանիշները կարելի է հանգեցնել հետևյալ չորս կետերի. 1) գաղափարական անաղարտություն, 2) մասնագիտական բարձր մակարդակ և տեսական խորություն, 3) նոր ստեղծագործական հարցադրումներ և, իհարկե, 4) պարզ ու հստակ ոճ։

Առաջադրելով փիլիսոփայական բոլոր գիտությունների համակողմանի զարգացման ընդհանուր խնդիրը, «Պրավդայի» խմբագրական հոդվածը միաժամանակ թվարկում է մի շարք արմատական պրոբլեմներ և ուղղություններ, որոնք մեր ուշադրությունը պետք է գրավեն առաջին հերթին։ Դրանցից են՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմի արմատական պրոբլեմները, զարգացած սոցիալիստական հասարակության և կոմունիզմին անցնելու օրինաչափությունները, բուրժուական գաղափարախոսության և ռևիզիոնիզմի փաստարկված, սուր և խոր քննադատությունը։ Հատկապես շեշտված է, որ պատմական մատերիալիզմը պետք է զարգացվի թե՛ որպես ընդհանուր-սոցիոլոգիական տեսություն և թե՛ որպես սոցիալ-փիլիսոփայական գիտելիք։

Հատուկ տեղ է հատկացված գիտատեխնիկական հեղափոխության պրոբլեմներին, հատկապես սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում դրա ընթացքի համեմատական ուսումնասիրությանը, գիտատեխնիկական հեղափոխության և սոցիալական առաջընթացի փոխհարաբերության բացահայտմանը, այդ հեղափոխության նվաճումները սոցիալիզմի առավելությունների հետ զուգակցելու խնդիրներին։

Վերջապես, ուշագրավ է, որ նշված հոդվածը մեր ուշադրությունն է հրավիրում մարդու սոցիալ-փիլիսոփայական պրոբլեմների մշակման վրա։ Դա պայմանավորված է սովետական սոցիալիստական կարգի առանձնահատկություններով, երբ մարդը գտնվում է սոցիալ-տնտեսական և քաղաքական կյանքի կենտրոնում, ինչպես և միջազգային ասպարեզում ծավալված գաղափարական պայքարի խնդիրներով։

Այս ամենը, սակայն, չի նշանակում, թե պետք է անտեսվեն փիլիսոփայական գիտության մյուս բաժիններն ու պրոբլեմները։ Փիլիսոփայական գիտելիքի առանձնահատկություններից մեկն այն է, որ նրանում թույլատրելի է, իսկ երբեմն էլ անհրաժեշտ՝ բազմիցս անդրադառնալ միևնույն հարցերին, դրանք լուծելով, իհարկե, նոր մակարդակով՝ հաշվի առնելով հասարակական կյանքի պայմանների փոփոխությունները և գիտության զարգացումը։ Այս իմաստով պատահիվ թե հնարավոր է կազմել փիլիսոփայական այն հարցերի թեկուզ մոտավոր ցանկը, որոնք մեկընդմիշտ լուծված են և հետագա մշակման կարիք չունեն։ Էլ չենք խոսում այն մասին, որ ինքնին փիլիսոփայական գիտության մակարդակն այսօր հնարավորություն է ընձեռում նոր բովանդակությամբ և նոր ձևով արծարծել փիլիսոփայության ավանդական հարցերը։

Կարող էր թվալ, օրինակ, թե հասարակական-տնտեսական ֆորմացիաների պրոբլեմը պատկանում է ամենից ավելի մշակվածների թվին։ Բայց իրականում կարևոր այդ պրոբլեմի շատ կողմեր առ այսօր կարոտ են ուսումնասիրության։ Այդ մասին է վկայում թեկուզ արտադրության, այսպես կոչված, ասիական եղանակի շուրջ պատմաբանների ծավալած վիճաբանությունը (որին, ի դեպ, փիլիսոփաները համարյա չեն մասնակցել), չխոսելով էլ այն մասին, որ, ինչպես նշում է «Պրավդան», կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի տեսության մասին ցարդ ստեղծված չէ կապիտալ որևէ աշխատություն։ Այնպես որ փիլիսոփայական գիտության բոլոր բնագավառներում էլ առաջիկայում հսկայական անելիքներ կան։

Անհրաժեշտ է, վերջապես, կանգ առնել գիտա-կազմակերպական բնույթի երկու հարցի վրա ևս, որոնք ուղղակիորեն շաղկապվում են փիլիսոփաների առջև ծառացած տեսական հրատապ խնդիրների հաջող լուծման հետ։ Դրանք ռեգիոնալ մասնագիտացման և հետազոտությունների կոմպլեքսայնության հարցերն են։

Ինչպես նշվում է «Պրավդայի» խմբագրական հոդվածում, այժմ խորանում է գիտա-փիլիսոփայական աշխատանքի բաժանումն ամբողջ երկրի մասշտաբով, տեղի է ունենում յուրօրինակ ռեգիոնալ մասնագիտացում։ Գնահատելով այդ պրոցեսը, թերթը գրում է, որ այն ունի «դրական մեծ նշանակություն, քանզի նպաստում է որակյալ կադրերի աճին և գիտական հետազոտությունների որակի բարձրացմանը, բարելավում է դրանց գործնական կոորդինացիան»։ Պատահական չէ, որ ՍՍՀՄ փիլիսոփայական ընկերության չորրորդ պլենումում, ընկերության հայկական բաժանմունքում, ինչպես նաև ՍՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի գիտական խորհրդում վերոհիշյալ հարցի քննարկման ժամանակ մեծ տեղ հատկացվեց մասնագիտացմանը, կոորդինացիային և կոոպերացիային։

Հիրավի, այն լուրջ խնդիրները, որոնք ծառացել են սովետական փիլիսոփաների առջև, կարող են լուծվել ամբողջ երկրի փիլիսոփաների հնարավորությունների ռացիոնալ օգտագործման շնորհիվ միայն։ Իսկ դա անխուսափելիորեն ենթադրում է, մի կողմից՝ տարբեր ռեգիոնների մասնագիտացում, մյուս կողմից՝ տարբեր ռեգիոնների փիլիսոփաների աշխատանքի կոոպերացում. Մասնավորապես, նպատակահարմար գտնվեց, առանց վերանայելու արդեն ձևավորված մասնագիտացումը և, ավելին, շարունակելով գիտական աշխատանքի մասնաբաժանումը, խնամքով տնօրինել այդ հարստությունը և հաստատել գործարար կապեր, կոորդինացնել աշխատանքները։ Վերջինս պետք է կատարվի երեք հիմնական ուղղություններով՝ 1) կենտրոն-ծայրամաս, 2) ծայրամասային հիմնարկությունների միջև, 3) առանձին ռեգիոնների սահմաններում։ Այս առնչությամբ խիստ մեծանում է ՍՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի՝ որպես երկրի առաջատար փիլիսոփայական հաստատության, դերը, որի ֆունկցիան է՝ կոորդինացնել ողջ երկրի մասշտաբով փիլիսոփայական հետազոտությունների և հանրապետական ակադեմիական ինստիտուտների գործունեությունը, որոնք իրենց հերթին պատասխանատու են միութենական հանրապետությունների սահմաններում գիտական աշխատանքների կոորդինացման համար։

Ինքնին հասկանալի է, որ մասնագիտացումն ամենևին չի նշանակում, թե մյուս հաստատություններին արգելվում է զբաղվել նույն պրոբլեմով։ Սակայն տվյալ դեպքում ևս, ակներևաբար, հարկ կլինի գոնե ճշգրտել հետազոտության ասպեկտը և ուղղությունը։ Չէ՛ որ նույնիսկ առաջատար ինստիտուտը, որն իր գրաված դիրքի բերումով կոչված է մշակելու փիլիսոփայական գիտելիքի բոլոր բնագավառները, այնուամենայնիվ, խնդիր չի դնում ընդգրկելու դրանք՝ բոլոր առումներով։ Այս պայմաններում ևս հնարավոր է տարբեր շրջանների փիլիսոփաների աշխատանքների կոորդինացում և կոոպերացում։

Իհարկե, կարող են լինել նաև թեմատիկայի կրկնության առանձին դեպքեր, մանավանդ պրոպագանդիստական աշխատանքի բնագավառում։ Ջանքերի կոորդինացումը և կոոպերացումը պահանջում են ո՛չ միայն փոխադարձ լրիվ ինֆորմացիա գիտահետազոտական և հրատարակչական պլանների մասին, այլև գիտական արդյունքների փոխանակում, համատեղ մշակումներ, ձեռագրերի համատեղ քննարկումներ և այլն։ Սա մեր գործունեության քիչ մշակված, բայց շատ կարևոր մի բնագավառ է, որը պահանջում է բանիմաց ու սրտացավ մոտեցում, իրականացման ձևերի ստեղծագործական որոնումներ։ Հարկավոր է հասնել այն բանին, որ փիլիսոփայական աշխատանքի կոորդինացումն ու կոոպերացումը ինքնաբուխ պահանջ դառնան։

Գիտակազմակերպական բնույթի մեկ ուրիշ խնդիր է որոշակի օբյեկտի փիլիսոփայական ուսումնասիրության համակողմանիության, կոմպլեքսայնության ապահովումը, որը կարող է իրականացվել փիլիսոփաների և այլ մասնագետների համատեղ ջանքերով միայն։ Կանխավ նկատենք, որ ՍՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի հետազոտությունների հեռանկարային պլանում ընտրված շատ պրոբլեմներ իրենց բնույթով կոմպլեքսային են և մասամբ նա-

թյան հանգուցային խնդիրները։ Այս պրոբլեմների մշակման բնագավառում հանրապետությունում բավականին գործ է արված ցայսօր։ Մնում է այն խորացնել ու ամբողջականացնել։

Չենք կասկածում, որ Հայաստանի փիլիսոփաների բնտանիքն ի վիճակի է հետայսու առավել սիստեմատիկ ու գործնականորեն օգնելու Հայկական սովետական հանրագիտարանին, ամենօրյա մասնակցություն ցուցաբերելու փիլիսոփայական տերմինաբանության մշակմանը և աջակցելու հրատարակչություններին՝ կանոնավոր հրատարակելու գիտա-մասսայական գրքույկներ՝ նվիրված փիլիսոփայության ու սոցիոլոգիայի օրվա թեմաների լուսաբանմանը։ Համոզված ենք, որ փիլիսոփայությամբ զբաղվող մեր ընկերները կշարունակեն և առավել սիստեմատիկ կդարձնեն իրենց բեղմնավոր պայքարն արդի ռեվիզիոնիզմի ու բուրժուական ռեակցիոն գաղափարախոսությունների ոտնձգությունների, նմանապես և մաոիզմի մեծապետական շովինիզմի դեմ։

Հետևողականորեն և առավել խորությամբ մշակելով ու պրոպագանդելով գիտական կոմունիզմի հանգուցային հարցերը, կարծում ենք, որ մեր ընկերները կարող կլինեն գալիք հնգամյակում ընթերցողի սեղանին դնելու սովետական ժողովրդի գոյավորմանը և հայ ազգի սոցիալիստական վերածնության պրոբլեմին նվիրված հիմնարար հետազոտություն։

Հույժ անհրաժեշտ է նաև մեր բազմահազար ուսանողներին ապահովել միութենական բուհերում օգտագործվող փիլիսոփայության դասագրքով, որը վերջին անգամ հայերեն լույս է տեսել 1963 թ. և սպառվել մի քանի օրում։

Այս ամենից բացի, հրամայական պահանջ է այժմ, որ մեր հանրապետության սոցիոլոգները համակողմանիորեն հետազոտեն հանրապետության բնակչության միգրացիոն պրոցեսները ԳՏՀ պայմաններում, ինչպես և ձեռնարկությունների ու շրջանների սոցիալական զարգացման պլանավորման այժմեական հարցերը։ Լուրջ անելիքներ ունեն հայ փիլիսոփայական մտքի պատմաբանները փիլիսոփայության պատմության բազմահատորյակը տպագրության պատրաստելու գործում։

Այժմ մեզ մտահոգում է նաև հանրապետությունում փիլիսոփայական կադրերի պատրաստման հարցը։ Այս առումով կարծում ենք, որ Երևանի պետական համալսարանի պատմության ֆակուլտետի փիլիսոփայության բաժինը պետք է դարձնել փիլիսոփաների, սոցիալ-հոգեբանների ու սոցիոլոգների պատրաստման կենտրոն։ Միաժամանակ անհրաժեշտ կլինի վերանայել այդ բաժնում ընդունվելու համար սահմանված պահանջներն այն միտումով, որ դրանք նպաստեն առավել ընդունակ երիտասարդների ընտրությանը։ Հասկանալի է, որ վերանայման ու բարելավման կարիք ունեն նաև այդ բաժնի մասնագիտական ուսումնական պլաններն ու ծրագրերը։

Հավանաբար հարկավոր է սահմանափակել ասպիրանտուրայի միջոցով և այդ գործը կենտրոնացնել այն հաստատություններում միայն, որոնք ունեն փիլիսոփայական որակյալ կադրեր պատրաստող հաստատությունների թիվը բարձրորակ մասնագետներ ու գիտահետազոտական աշխատանքի համար նպաստավոր միջավայր։

Այսպիսով, հանրապետության փիլիսոփաների ստեղծագործ կոլեկտիվը ՍՄԿԿ XXV և Հայկոմկուսի XXVI համագումարները դիմավորում են պատկառելի ծրագրով և այն կենսագործելու պատշաճ հաստատակամությամբ։ Սովետական ժողովրդի համար պատմական այս օրերին Սովետական Հայաստանի փիլիսոփաները վստահեցնում են հարազատ կուսակցությանը, որ հետայսու ևս կշարունակեն ընթանալ հանուն մարքսիզմ-լենինիզմի մարտնչող առաջամարտիկների շարքերում և ջանք չեն խնայի իրենց ծանրակշիռ լուման մուծելու փիլիսոփայական մտքի զարգացման հույժ պատվավոր գործում։

---

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՄԿՐՏՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Ն. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ**
Պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

Իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական հեղափոխության ժամանակ Ռուսաստանի բանվոր դասակարգի և գյուղացիության հետ ցարիզմի և շահագործող դասակարգերի դեմ անհաշտ պայքարի էին ելել նաև երկրի ազգային բոլոր շրջանների ու ծայրամասերի, այդ թվում նաև Անդրկովկասի բանվորներն ու գյուղացիները, որոնք անմոռանալի ու փայլուն էջեր գրեցին հեղափոխական շարժումների պատմության ոսկետառ մատյանում։

Անդրկովկասի բանվորների ու գյուղացիների 1905—1907 թթ. հեղափոխական շարժումները ղեկավարում էին երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունները։

Ռուսական առաջին հեղափոխությունն սկսվեց 1905 թ. հունվարի 9-ի արյունոտ դեպքերով, որոնք առաջ բերեցին բանվորագյուղացիական մասսաների բուռն զայրույթի, բողոքի ցույցերի ու գործադուլների վիթխարի ալիք ողջ երկրում։ Պետերբուրգի բանվորների հետ համերաշխության շարժումը համակեց բովանդակ երկրի բազմազգ պրոլետարներին։ Քաղաքական պայքարի ելավ նաև գյուղացիությունը։ Միայն հունվարին գործադուլավորների թիվն ավելի մեծ էր, քան ամբողջ տասնամյակում, իսկ հունվար-մարտ ամիսներին նրանց թիվը հասավ ավելի քան 810 հազարի։ Շարժումն ընդգրկել էր ո՛չ միայն երկրի կենտրոնական, այլև ծայրամասային-ազգային շրջանները, այդ թվում՝ Մերձբալթիկան, Լեհաստանը, Ուկրաինան, Կովկասը։

Անդրկովկասում հունվարի 9-ի արյունալի դեպքերի լուրն առաջինն ստացվեց Բաքվում, հունվարի 10-ին։ Երեկոյան քաղաքային թատրոնի շենքում կազմակերպվեց թռուցիկ-ցույց՝ «Կորչի՛ ինքնակալությունը», «Կեցցե՛ հեղափոխությունը» լոզունգներով։ Մինչև հունվարի վերջը չէին ընդհատվում Բաքվի գործարանների, ֆաբրիկաների ու ձեռնարկությունների բանվորների մասսայական ելույթները։ Նման ելույթներ տեղի ունեցան նաև Թիֆլիսում, Քութաիսիում, Չիաթուրիի լեռնահանքերում, Ալավերդում, Երևանում, Ալեքսանդրապոլում, Ղափանում, Կարսում, Շուշիում, Ելիզավետապոլում, որոնց մասին հաղորդագրություններ եղան բոլշևիկյան «Вперед» և ապա «Пролетарий» թերթերում։ Հունվար-մարտ ամիսների ընթացքում երկրամասում ավելի լայն թափ ստացավ հեղափոխական շարժումը, որը գլխավորում էին ՌՍԴԲԿ Կովկասյան միության կոմիտեն և տեղական կոմիտեները։ Դրանք հրապարակում ու տարածում էին հազարավոր թռուցիկներ, կոչեր և բոցավառում էին ցարիզմի նկատմամբ բազմազգ ժողովրդական մասսաների մեջ լեռնացած ատելությունը։

Վախենալով հեղափոխության թափից և ձգտելով ջլատել Անդրկովկասի աշխատավորության ինտերնացիոնալ համախմբվածությունը, ցարը և երկրամասի փոխարքայությունը տեղի շահագործող դասակարգերի և բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների օգնությամբ ազգամիջյան կռիվներ հրահրեցին։ Եվ միայն Անդրկովկասի բոլշևիկների հերոսական ջանքերի շնոր-

հիվ կասեցվեցին այդ կռիվները: Երկրամասի բանվորա-գյուղացիական լայն մասսաներն ավելի սերտորեն համախմբվեցին բոլշևիզմի դրոշի շուրջը և շարունակեցին սկսած հեղափոխությունը:

Բանվորական շարժման թափն առավել ուժեղացավ ապրիլ և մայիս ամիսներին: Երկրամասի երկաթուղային բանվորների ընդհանուր գործադուլը տևեց մոտ երկու շաբաթ: Մայիսյան համընդհանուր գործադուլներն ու ցույցերը մեծ վերելքով անցան հատկապես Բաքվում, Քութայիսում, Չիաթուրիում, Ալավերդում և բանվորական այլ կենտրոններում: Մենշևիկների հանցանքով մայիսյան ցույցեր տեղի չունեցան Թիֆլիսում և Բաքվում:

Բանվորական շարժման ազդեցությամբ ոտքի ելան նաև գյուղացիները, դեմոկրատական ինտելիգենցիան, սովորող երիտասարդությունը: Գյուղացիական ելույթներն առանձնապես կազմակերպված անցան Վրաստանում, որի 19 գավառներից 18-ում տեղի ունեցան ապստամբություններ: Դրանք ճնշելու համար կառավարությունը գործադրեց զինված ուժեր՝ գեներալ Ալիխանով-Ավարսկու գլխավորությամբ: Վրաստանի, հատկապես Գուրիայի գյուղացիական շարժումների մասին բարձր կարծիք հայտնեց բոլշևիկյան «Вперед» թերթը (№ 14, 1905 թ.), համարելով դրանք Ռուսաստանի պրոլետարական շարժմանը հարող լիովին գիտակցված քաղաքական շարժումներ:

Ռուսաստանում ու Արևմտյան Վրաստանում վեր բարձրացող գյուղացիական շարժումներն իրենց բարերար ազդեցությունն ունեցան նաև Ադրբեջանի և Հայաստանի գյուղացիության վրա: Այդ տեսակետից կարևոր դեր խաղացին ՌՍԴԲԿ Կովկասյան միության կոմիտեի, Բաքվի և այլ կոմիտեների հրապարակած հայերեն, ադրբեջաներեն, վրացերեն ու ռուսերեն թռուցիկներն ու կոչերը, որոնցում կուսակցության մինիմում ծրագրի ոգով գյուղացիությանը կոչ էր արվում միանալ Ռուսաստանի բանվորա-գյուղացիական մասսաներին և զինված ապստամբության միջոցով տապալել ինքնակալությունը, հաստատել դեմոկրատական հանրապետություն, վերջ տալ ճորտատիրական մնացուկներին և այլն:

Անդրկովկասի գյուղացիական շարժումների բնորոշ գիծը նրանց մասնակիցների ինտերնացիոնալ համախմբվածությունն էր, համերաշխությունը Ռուսաստանի աշխատավորության հետ, բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների վարքագծի դատապարտումը:

Այդ ժամանակ երկրամասում աշխուժացել էին ուսանող և սովորող երիտասարդության հեղափոխական ելույթները, որոնք գերազանցապես ընթանում էին բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ:

ԻՆՉՊԵՍ ԱՄԲՈՂՋ ԵՐԿՐՈՒՄ, ԱՅՆՊԵՍ ԷԼ Անդրկովկասում հեղափոխությունը շարժման մեջ էր դրել բոլոր դասակարգերին ու կուսակցություններին, հարկավոր էր մշակել սեփական տակտիկա, ելնելով նոր իրադրության պահանջներից:

ՌՍԴԲԿ-ի համար այդ խնդիրը դժվարանում էր, քանի որ մենշևիկները շարունակում էին իրենց պառակտիչ գործողությունները: Անդրկովկասում մենշևիկների դիրքերն ամուր էին, հատկապես Թիֆլիսում: Դուրս գալով ՌՍԴԲԿ Կովկասյան միության կազմից, նրանք հրավիրեցին կոնֆերանս, ստեղծեցին իրենց կենտրոնը՝ ի դեմս ՌՍԴԲԿ Կովկասյան բյուրոյի և հրաժարվեցին մասնակցել կուսակցության III համագումարին ու իրենց ներկայացուցիչն ուղարկեցին մենշևիկների Ժնևյան կոնֆերանսին:

ՌՍԴԲԿ III համագումարը մեծ հետաքրքրություն ցուցաբերեց Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության և հեղափոխական շարժումների փորձի նկատմամբ, հավանություն տվեց Մ. Ցխակայայի զեկուցմանը՝ երկրամասի գյուղացիական շարժումների և ՌՍԴԲԿ Կովկասյան միության աշխատանքի վերաբերյալ, նշեց վերջինիս հաջողությունը հրատարակչական ասպարեզում, ընդունեց Կովկասի դեպքերի մասին Լենինի կազմած հայտնի բանաձևը, որտեղ խնդիր էր դրվում մասսայականացնել կուսակցական աշխատանքի կովկասյան փորձը և ընդգծում էր երկրամասի բոլշևիկյան կազմակերպությունների մարտական բնույթը: Համագումարը մշակեց կուսակցության



ստրատեգիան ու տակտիկան ընթացիկ հեղափոխության մեջ, որոնք իրենց տեսական հիմնավորումը գտան Վ. Ի. Լենինի Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ աշխատությունում

Համագումարից հետո ամենուրեք սրվեց ներկուսակցական պայքարը: Անդրկովկասի բոլշևիկները, ՌՍԴԲԿ Կովկասյան միության ղեկավարությամբ, հաջողությամբ պայքարում էին համագումարի որոշումների կենսագործման համար, իրենց տպագիր օրգաններում մերկացնում մենշևիկների հերյուրանքները, պրոպագանդում համագումարի որոշումներն ու Վ. Ի. Լենինի համապատասխան աշխատությունները: «Պրոլետարիատի կռիվը» թերթի այդ կարգի մի քանի հոդվածներ արժանացան Լենինի հավանությանը և արտատպվեցին «Пролетарий» թերթում:

Համագումարից հետո, Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններն ամրապնդելու և մասսաների մեջ տարվող հեղափոխական աշխատանքն ուժեղացնելու նպատակով, ՌՍԴԲԿ Կովկասյան միության կոմիտեն իր անդամների մի մասին ուղարկեց տեղերը: Հայաստան եկավ Ստ. Շահումյանը, որի ղեկավարությամբ համագումարի ոգով վերակառուցվեցին կուսակցական աշխատանքները: ՌՍԴԲԿ Բորչալուի կազմակերպության խորհրդակցությունը (1905 թ. մայիս) հավանություն տվեց III համագումարի մասին Շահումյանի զեկուցմանը և ընտրեց գավառային կոմիտե՝ Ա. Կախոյանի գլխավորությամբ: Նույնն արեց ՌՍԴԲԿ Երևանի կազմակերպությունը, որն ընտրեց քաղաքային կոմիտե՝ Ա. Մալխասյանի և Գ. Սոկոլովսկու գլխավորությամբ:

Վերակառուցվեցին նաև Բաքվի, Թիֆլիսի, Քութայիսի, Չիաթուրիի, Ալավերդու, Ալեքսանդրապոլի, Իմերեթիայի, Գուրիայի ու զինվորական մասերի կուսակցական կազմակերպությունների աշխատանքները: Ամենուրեք անցկացվեցին դիսկուսիաներ III համագումարի որոշումների շուրջ, որոնցում զեկուցումներով հանդես եկան Մ. Ցխակայան, Ստ. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Ա. Ծուլուկիձեն, Ի. Ստալինը և շատ ուրիշներ: Նրանց մի մասը (Ծուլուկիձե, Շահումյան, Ստալին) հանդես եկավ նաև տեսական աշխատություններով և պաշտպանեց կուսակցության լենինյան ստրատեգիական ու տակտիկական դրույթները, մարքսիզմի տեսական հիմունքները:

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների ազդեցությունը մասսաների վրա հետզհետե աճում էր... Դրա լավագույն արտահայտությունը 1905 թ. հունիսի հեղափոխական շարժումների նոր վերելքն էր երկրամասում: Այս անգամ էլ առաջին շարքերում էին Թիֆլիսի բանվորները, որոնք հունիսի 20-ին ընդհանուր գործադուլ սկսեցին: Հունիսի 23-ին նրանց միացան երկրամասի երկաթուղայինները, այնուհետև ոտքի ելավ Բաքվի պրոլետարիատը: Օգոստոսին ամբողջ երկրի հեղափոխական շարժումների ճնշման տակ ցարը հրապարակեց մանիֆեստ խորհրդակցական դումա հրավիրելու մասին: Բոլշևիկների կուսակցությունն առաջ քաշեց դումայի ակտիվ բոյկոտի տակտիկան, որը հաջողությամբ իրագործվեց նաև Անդրկովկասում: Հակառակ սեհարյուրակային կազմակերպությունների, բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների (հատկապես դաշնակների և ֆեդերալիստների) հարուցած արգելքներին և հանցավոր գործողություններին, աստիճանաբար ուժեղանում էր երկրամասի հեղափոխական շարժումների թափը:

ՌՈՒՍԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔՆ առանձնապես ուժեղացավ 1905 թ. աշնանն ու ձմռանը, երբ տեղի ունեցան հոկտեմբերյան ընդհանուր քաղաքական գործադուլն ու դեկտեմբերյան զինված ապստամբությունները, որոնք լայն արձագանք գտան նաև Կովկասում: ՌՍԴԲԿ Կովկասյան միության և Թիֆլիսի կոմիտեների կոչով, Մոսկվայի և Պետերբուրգի բանվորների օրինակով, առաջինը գործադուլ արին Թիֆլիսի երկաթուղային բանվորները, որոնց միացան քաղաքի և երկրամասի արդյունաբերական շրջանների բանվորները: Դադարեց երկաթուղային երթևեկությունը, տնտեսական կյանքը համարյա ամբողջովին կանգ առավ նաև Անդրկովկասում: Ամենուրեք ստեղծվեցին գործադուլային կոմիտեներ, որոնք տեղ-տեղ իրենց ձեռքը վերցրին իշխանությունը:

շում ընդունեց միանալ համառուսաստանյան քաղաքական գործադուլին: Միջոցներ ձեռնարկվեցին երկու ֆրակցիաների գործողությունների համաձայնեցման համար, դեկտեմբերի 10-ին բոլշևիկյան «Кавказский рабочий листок»-ը զինված ապստամբության կոչ արձակեց: Հաջորդ օրը, համաքաղաքային միտինգում, որոշվեց դեկտեմբերի 12-ին ընդհանուր գործադուլ սկսել, այնուհետև բոլշևիկների և մենշևիկների համատեղ ժողովն ստեղծեց կենտրոնական գործադուլային բյուրո, որի կազմում բոլշևիկներից ընտրվեցին Ստ. Շահումյանը, Ֆ. Մախարաձեն, Ի. Ստալինը, Մ. Ցխակայան և ուրիշներ:

Դեկտեմբերի 12-ին սկսվեց Թիֆլիսի պրոլետարիատի և ամբողջ Անդրկովկասի երկաթուղայինների ընդհանուր գործադուլը: Երկրամասի երկաթուղային տրանսպորտը փաստորեն անցավ գործադուլայինների ձեռքը:

Դեկտեմբերի 15-ին Կովկասի փոխարքայությունը ռազմական դրություն հայտարարեց Թիֆլիսի նահանգում ու ամբողջ երկաթուղային տրանսպորտում: Հաջորդ օրը գործադուլային բյուրոն կոչ արեց դիմել զինված պայքարի: Դեկտեմբերի 18-ին կանոնավոր զորքերի և ապստամբների միջև արյունալի կռիվներ սկսվեցին, որի ընթացքում զոհվեցին շատերը, վիրավորվեցին և բանտարկվեցին Ս. Տեր-Պետրոսյանը (Կամո) և ուրիշներ: Թիֆլիսի ապստամբներին պաշտպանելու եկան Արևմտյան Վրաստանի գյուղացիները, որոնք զինված ջոկատներ ուղարկեցին Թիֆլիս և իշխանություններից պահանջեցին վերացնել ռազմական դրությունը նահանգում: Զինված ապստամբության ալիքը տարածվեց Քութաիսի, Զուգդիդի, Շորոպանի գավառները: Ապստամբները գրավեցին Երևան—Ալեքսանդրապոլ—Կարս—Սանահին կայարանները. տեղ-տեղ զինվորներն անցան ապստամբների կողմը (Ալեքսանդրապոլ):

Ապստամբությունը դադարեց 1905 թ. դեկտեմբերի 29-ին՝ կենտրոնական գործադուլային բյուրոյի որոշմամբ: Այսպիսով, 1905 թ. դեկտեմբերի զինված ապստամբությունների շրջանում Անդրկովկասն ընթանում էր երկրի առաջավոր ապստամբ շրջանների շարքում և աչքի ընկավ իր կազմակերպվածությամբ, որի մասին գովեստով էր խոսում Վ. Ի. Լենինը (տե՛ս Երկեր, հ. 19, էջ 305, 306):

Մոսկվայի 1905 թ. դեկտեմբերյան ու երկրի մի շարք շրջաններում դրան հաջորդած զինված ապստամբությունների պարտությամբ սկսվեց ռուսական առաջին հեղափոխության վայրէջքի և ռեակցիայի ուժեղացման շրջանը (1906—1907 թթ. հունիս): Սակայն դեռևս շարունակվում էր մասսաների գրոհը, որին ակտիվորեն մասնակցում էին նաև Անդրկովկասի պրոլետարիատն ու գյուղացիությունը՝ բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ:

1906 թ. սկզբներին տեղի ունեցան ՌՍԴԲԿ IV միավորիչ համագումարի պատգամավորների ընտրություններ, ընդ որում Բաքվից համագումարի պատգամավոր ընտրվեցին երկու բոլշևիկ և մեկ մենշևիկ: Երևանից ընտրվեց Ստ. Շահումյանը, Թիֆլիսից՝ Ի. Ստալինը: Վրաստանի մենշևիկները խարդախ ճանապարհով ավելի շատ պատգամավորներ ուղարկեցին համագումար:

Համագումարում Անդրկովկասի բոլշևիկները բոլոր գլխավոր հարցերում կանգնած էին լենինյան դիրքերում:

Ինչպես հայտնի է, համագումարը ձևականորեն միավորեց կուսակցությունը: Հետհամագումարյան շրջանում ավելի ուժեղացան տարաձայնությունները բոլշևիկների և մենշևիկների միջև: Այդպիսի իրադրության պայմաններում տեղի ունեցավ ՌՍԴԲԿ Անդրկովկասյան կազմակերպությունների IV համագումարը (1906 թ. սեպտեմբեր, Թիֆլիս—Բաքու): Քանի որ այն իր կազմով գերազանցապես մենշևիկյան էր (43 պատվիրակներից միայն 6-ը բոլշևիկ), ուստի ընդունեց մենշևիկյան որոշումներ և ընտրեց մարզային կոմիտե՝ կազմված հիմնականում մենշևիկներից: Շուտով այդ կոմիտեի գլխավորությամբ մենշևիկները կատաղի գրոհ սկսեցին բոլշևիկների դեմ, որոնք ստիպված 1907 թ. սկզբներին ստեղծեցին իրենց մարզային կենտրոնը՝ «Թիֆլիսի բոլշևիկների գրական բյուրո» անվամբ: Դրա կազմում էին նաև Ստեփան Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Ի. Ստալինը, Ս. Սպանդարյանը, Մ. Ցխակայան:

Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները, պաշտպանելով



ՌՍԴԲԿ IV համագումարում առաջ քաշված լենինյան տեսակետները, ջանքեր չէին խնայում մենշևիկյան որոշումների վնասակարության բացահայտման ու ամեն գույնի հակակուսակցական ուղղությունների, բուրժուական ու մանրբուրժուական կուսակցությունների դեմ մղվող պայքարի ծավալման գործում: Այդ նրանք անում էին համագումարի լենինյան փաստաթղթերի և Լենինի աշխատությունների հրատարակության, կենտրոնական կուսակցական թերթերի տարածման, տեղական, երկրամասային բոլշևիկյան մամուլի ու գրականության, գրավոր ու բանավոր պրոպագանդայի միջոցով և բազմաթիվ այլ մեթոդներով:

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում ագրարային և ազգային հարցերի վերաբերյալ Ստ. Շահումյանի, Ֆ. Մախարաձեի, Մ. Դավիթաշվիլու, Մ. Ցխակայայի հոդվածները, տակտիկայի և բուրժուական նացիոնալիզմի վերաբերյալ Ս. Սպանդարյանի, անարխիզմի մասին Ստալինի ու Ս. Էֆենդիևի աշխատությունները և այլն:

Բոլշևիկները մերկացնում էին ո՛չ միայն մենշևիկների օպորտունիզմը, այլև Անդրկովկասի էսեռական և կադետական, բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների ու մանրբուրժուական հնչակյան և սպեցիֆիկյան կազմակերպությունների հակաժողովրդական վարքագիծը:

ԱՅԴՊԻՍԻ ԻՐԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԵՐԿՐԱՄԱՍԻ բանվոր դասակարգը շարունակում էր պայքարը, որը հաճախ սուր բնույթ էր ընդունում: Բոլշևիկներն ամեն ինչ անում էին այդ պայքարին կազմակերպված բնույթ տալու և համաժողովրդական զինված ապստամբության նախապատրաստվելու համար: Հզոր էին մասսայական քաղաքական գործադուլներն ու բանվորների ելույթները հատկապես 1906 թ. ամռանը (հունիսին՝ Թիֆլիսում, օգոստոսին՝ Բաքվում, Ալավերդում): Ալավերդու բազմազգ բանվորների օգոստոսյան գործադուլը, որը տևեց մոտ մեկ ամիս, ճնշվեց միայն կազակային զորքերի ու զինված ոստիկանության ուժերով: Այն ղեկավարում էին Ստ. Շահումյանն ու Ս. Սպանդարյանը և ՌՍԴԲԿ Լոռու կազմակերպությունը:

Բոլշևիկները մեծ աշխատանք էին կատարում նաև գյուղացիությանը վերահաս զինված ապստամբությանը մասնակից դարձնելու համար: Այդ տեսակետից ուշագրավ է ՌՍԴԲԿ Լոռու կազմակերպության նախաձեռնությամբ 1906 թ. հուլիսին Հաղպատի մոտ «Խաչի Դուռ» կոչվող վայրում անցկացված կուսակցական խորհրդակցությունը և գյուղացիների մասսայական միտինգը, որտեղ կոչ էր արվում պատրաստվել ցարիզմի ու կալվածատերերի դեմ մարտերի:

Բոլշևիկյան ագիտացիան իր պտուղներն էր տալիս նաև բանակում ու նավատորմում: Հենց դրա արդյունքն էին Բաքվի կայազորում, Կասպիական նավատորմում, Բաթումիում, Թիֆլիսում, Ալեքսանդրապոլում և այլ տեղերում զինվորների ու նավաստիների զինված ելույթները:

1907 թ. ձմռանն ու գարնանը շարունակվում էին Անդրկովկասի հեղափոխական ու ազգային-ազատագրական շարժումները: Պրոլետարիատի արիերգարդային մարտերն առանձնապես սուր էին Բաքվում: Հունվար-ապրիլ ամիսներին գործադուլներ տեղի ունեցան երկրամասի համարյա բոլոր բանվորական շրջաններում, իսկ մայիսին անցկացվեցին մասսայական-քաղաքական ցույցեր ու գործադուլներ, որոնք տեղ-տեղ ավարտվեցին բանվորների հաղթանակով:

Հաջողությամբ պսակվեցին մասնավորապես Երևանի Սարաջևի գործարանի բանվորների հունվարյան, Ղափանի լեռնագործների մարտյան և Նուխու ջուլհակների մայիսյան գործադուլները: Երևանի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության մեջ կարևոր դեր խաղաց «Факты» թերթի հրատարակությունը (1907 թ. փետրվար—Գ. Սոկոլովսկու խմբագրությամբ), որը Հայաստանի տերիտորիայում հրատարակված առաջին սոցիալ-դեմոկրատական թերթն էր:

Անդրկովկասի լենինյանները մերկացնում էին բուրժուա-նացիոնալիստական կուսակցությունների մեքենայությունները, ցարիզմի հետ գործարքի նր-

բանց քաղաքականությունը։ Այդ կուսակցություններից մեկը՝ դաշնակցությունը, 1905—1907 թթ. հեղափոխության ընթացքում հայ ժողովրդական մասսաներին երկրամասի և համառուսաստանյան հեղափոխական շարժումներից հեռու պահելու նպատակով, նույնիսկ «սոցիալիստական» դիմակ հագավ և փորձեց հանդես գալ իբրև «հայ պրոլետարիատի ղեկավար» կուսակցություն։ Ստ. Շահումյանը, ծաղրելով դաշնակցականների այդ վարքագիծը, գրում էր. «Ձեր «սոցիալիստական» փետուրները չեն կարող ծածկել ոչ-ոքից ձեր տգեղ բուրժուական կերպարանքը» (Երկեր, հ. 1, էջ 184—185)։

1907 թ. ձմռանն ու գարնանը բանվորական գործադուլներ և գյուղացիական ելույթներ տեղի ունեցան Ադրբեջանում, Հայաստանում ու Վրաստանում, հուզումներ եղան բանակում, նավատորմում, ուսանող և սովորող երիտասարդության շրջաններում։

Չնայած այս բոլորին, արդեն ակնհայտ էր, որ հեղափոխությունը երկրում վայրէջք էր ապրում և անհրաժեշտ էր վերանայել կուսակցության տակտիկան։ Առաջացավ նոր համագումար հրավիրելու անհրաժեշտությունը, որի համար բոլշևիկները եռանդուն պայքար ծավալեցին։ Անդրկովկասի մենշևիկները դեռ ՌՍԴԲԿ երկրամասային IV համագումարում դեմ դուրս եկան կուսակցության V համագումարի հրավիրմանը և պաշտպանեցին «բանվորական համագումարի» հրավիրման օպորտունիստական, լիկվիդատորական տեսակետը։ Երկրամասի բոլշևիկները հսկայական ջանքեր գործադրեցին մենշևիկների օպորտունիզմը մերկացնելու և V համագումարին նախապատրաստվելու համար։ Բոլշևիկների աշխատանքն առանձնապես արդյունավետ էր Բաքվում, Թիֆլիսում, Ելիզավետապոլում, Երևանում, Կարսում, Ալեքսանդրապոլում։

ՌՍԴԲԿ V համագումարը (1907 թ. մայիս) հավաստեց բոլշևիկների հաղթանակը մենշևիկների նկատմամբ, ընդունեց լենինյան որոշումներ և նպաստեց ամբողջ երկրի ու Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների գործունեության հետագա ուժեղացմանը։

Սակայն 1907 թ. հունիսերեքյան հեղաշրջումով ցարիզմը հաղթանակ տարավ հեղափոխության նկատմամբ։ Հեղափոխությունը պարտվեց, սկսվեց ռեակցիայի ժամանակաշրջանը։ Այն սկսեց մոլեգնել ամբողջ երկրում, այդ թվում և Անդրկովկասում։

Հանրահայտ էին ռուսական առաջին հեղափոխության պարտության պատճառները և նրա համաշխարհային պատմական նշանակությունը։ Այդ հեղափոխության մեջ իրենց ծանրակշիռ ներդրումն ունեցան նաև Անդրկովկասի բանվոր դասակարգը, ողջ գյուղացիությունն ու ինտելիգենցիան։ Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպություններն այդ տարիներին, դրսևորելով լենինյան կոփվածություն, գլխավորեցին երկրամասի հեղափոխական, ազգային-ազատագրական շարժումները և մինչև վերջ ընթացան ինքնակալության դեմ մղված պայքարի առաջին շարքերում։

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

**Ծ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ, Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**

ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ՆԵՐԿԱՅՈՒՄՍ համընդհանուր ուշադրության առարկա են։ Վերջին 10—15 տարում տարբեր երկրների բազմաթիվ գիտնականներ, քաղաքական գործիչներ, կառավարական օրգաններ շատ ավելի հաճախ են անդրադառնում երիտասարդների կյանքի, աշխատանքի, երիտասարդական շարժման հարցերին։ Երիտասարդության, իբրև մարդկային հասարակության ուրույն մասի, պրոբլեմների տեսական իմաստավորման անհրաժեշտությունն արդյունք է մի շարք օբյեկտիվ պատճառների։

Մինչև 30 տարեկան մարդկանց հասարակության մյուս անդամներից, անշուշտ, կարելի է տարբերել հոգեբանական, ֆիզիոլոգիական, տարիքային և այլ՝ միայն նրանց հատուկ բնութագծերով։ Սակայն, սոցիոլոգիական գիտության տեսանկյունից, երիտասարդության ուրույն դերն ու նշանակությունը հասարակական կյանքում առաջին հերթին որոշվում են նրա սոցիալական առանձնահատկությամբ։ Երիտասարդության սոցիալական զարգացման էությունը կարելի է ըմբռնել՝ աճող սերնդին դիտելով հասարակության ամբողջ կառուցվածքի գործառնության ու էվոլյուցիայի մեջ, վերլուծելով երիտասարդության սոցիալական ֆունկցիաները։

Երիտասարդությունն, ամենից առաջ, հասարակության սոցիալ-դեմոգրաֆիական ամենամեծ խումբն է։ ՅՈՒՆԵՍԿՕ-ի տվյալների համաձայն, ներկայումս մոլորակի բնակչության կեսից ավելին մինչև քսանհինգ տարեկաններն են։ Ուստի հասարակության այս մասն է գալիք հասարակական-քաղաքական պրոցեսների անմիջական սուբյեկտը, քանի որ հասարակության զարգացումը սերունդների հերթափոխումն է։ Նշանակում է, երիտասարդության հիմնական սոցիալական ֆունկցիան է՝ պատրաստվել այդ պրոցեսների կրողը դառնալու, ժառանգելու նախորդ սերունդների փորձը, այն ստեղծագործաբար զարգացնելու նոր հասարակական խնդիրներին համապատասխան։ Միաժամանակ այդ նշանակում է, որ երիտասարդությունը ո՛չ միայն գալիքի պոտենցիալ սուբյեկտն է, այլև ներկայիս դաստիարակության օբյեկտը։ Այս առումով, առանձնապես մեծանում են երիտասարդության տեղն ու դերը սոցիալիզմի պայմաններում, որտեղ երիտասարդ սերնդի հասարակական-քաղաքական, բարոյական, կրթական ձևավորումն ավելի ու ավելի է դառնում ողջ հասարակության հետագա առաջընթացը պայմանավորող վճռական գործոններից մեկը։ Երիտասարդների եռանդը, աշխատանքային ոգևորությունը վիթխարի դեր կարող են խաղալ և զարգացող երկրներում՝ դրանց առջև ծառացած տնտեսական և սոցիալական բարեփոխումների իրականացման ասպարեզում։

Բուրժուական շատ սոցիոլոգներ ու հոգեբաններ հակված են, ի դեմս երիտասարդ սերնդի գործողությունների, ընդհանրապես երիտասարդական շարժման մեջ և, մասնավորապես, 1968 թ. Արևմտյան Եվրոպան համակած երի-

տասարդական հուզումներում տեսնել միմիայն սերունդների անխուսափելի բախում, միմիայն պատանեկան մաքսիմալիզմի դրսևորում. Հետևաբար, այդ հուզումները, գտնում են նրանք, արմատներ չունեն բուն սոցիալական սիստեմում, այլ զուտ հոգեբանական կամ տարիքային պատճառների ծնունդ են: Մինչդեռ սոցիալական ոչ մի երևույթ չի կարելի գնահատել՝ կտրելով այն հասարակական-քաղաքական ու տնտեսական առկա կյանքից: Մարքսիստական-սոցիոլոգիական միտքը ևս չի անտեսում հասակային առանձնահատկությունները, սակայն կապիտալիստական երկրների աճող սերնդի ներկայիս «ձախացումն» ունի իր սոցիալական խոր արմատները և, ամենից առաջ, արտացոլում է կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամը: Ինչպես ամբողջ աշխարհում, այնպես էլ առանձին երկրներում, պատմականորեն կոնկրետ սոցիալական յուրաքանչյուր իրավիճակում երիտասարդության տեղն ու դերը, նրա քաղաքական կողմնորոշումը, երիտասարդական շարժման գլխավոր միտումները հնարավոր է գիտականորեն ըմբռնել՝ միմիայն ղեկավարվելով սոցիալական երևույթներին դասակարգային, կուսակցական մոտեցման մարքսիստական սկզբունքով: Մասնավորապես, բուրժուական աշխարհում հետզհետե աճում է առաջադեմ երիտասարդության սոցիալական բողոքը, որը, թեև հաճախ տարերային է, ոչ միշտ կազմակերպված, սակայն լուրջ սպառնալիք է կապիտալիստական հասարակարգի համար: Այդ ըմբռնող բուրժուական քաղաքագետները ձգտում են ազդել երիտասարդ սերնդի աշխարհհայացքի, դասակարգային կողմնորոշման վրա, երիտասարդական կազմակերպությունները մեկուսացնել կոմունիստական ու բանվորական շարժումից: Հիմնականում դրանով է բացատրվում վերջին տարիներս երիտասարդության պրոբլեմներին նվիրվող մեծ ուշադրությունը, որն աճում է երիտասարդական շարժման քաղաքական հասունացմանը զուգընթաց: Մյուս կողմից՝ բուրժուական գաղափարախոսության գլխավոր թիրախը ներկայումս դարձել է սոցիալիստական, ինչպես նաև զարգացող երկրների աճող սերունդը: Սա ևս մարքսիստական գիտության համար անհրաժեշտ է դարձնում երիտասարդության պրոբլեմների համակողմանի ուսումնասիրությունը, երիտասարդության ու երիտասարդական շարժման բուրժուական մի շարք կոնցեպցիաների քննադատությունը: Ստորև փորձենք պարզաբանել արդի երիտասարդական շարժման հիմնական միտումները:

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ, դրա առջև ծառացած խնդիրները, ամենից առաջ, անհրաժեշտ է դիտել արդի պատմական իրադրության առանձնահատկությունների հետ սերտորեն կապված:

«Արդի դարաշրջանը, որի հիմնական բովանդակությունն անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— երկու հակադիր հասարակական սիստեմների պայքարի դարաշրջանն է, սոցիալիստական և ազգային-ազատագրական հեղափոխությունների դարաշրջանը, իմպերիալիզմի կործանման, գաղութային սիստեմի վերացման դարաշրջանը, նորանոր ժողովուրդների՝ սոցիալիզմի ուղին անցնելու, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի դարաշրջանը» (Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագիրը, Ե., 1974, էջ 6): Ահա հենց կապիտալիզմից դեպի սոցիալիզմ մարդկության համաշխարհային-պատմական շրջադարձը, որն սկսվեց Հոկտեմբերյան հեղափոխությամբ (տե՛ս նույն տեղում, էջ 8), վերջին հաշվով, պայմանավորում է սոցիալ-քաղաքական գլխավոր իրադարձությունների միտումները: Այն իր դրոշմն է թողնում և միջազգային երիտասարդական շարժման վրա, պայմանավորում աշխարհի դեմոկրատական երիտասարդության պայքարի նպատակներն ու խնդիրները:

Մեր դարաշրջանի այս հիմնական բնութագրի հետագա ծավալումն առնչվում է սոցիալական տարբեր սիստեմների՝ կապիտալիզմի և սոցիալիզմի փոխհարաբերության հարցին: Սոցիալիզմի գոյությունը, սոցիալիստական համագործակցության երկրների ռազմա-տեխնիկական ու տնտեսական հզորության աճը իմպերիալիստական ամենաագրեսիվ շրջաններին պարտադրում են



նոր տիպի միջազգային հարաբերություններ: Արդի գիտատեխնիկական հեղափոխության ընձեռած վիթխարի հնարավորությունների պայմաններում սոցիալական տարբեր սիստեմներին պատկանող պետությունների խաղաղ գոյակցությունը նրանց վտանգաբեր առճակատման միակ բանական ալտերնատիվն է, ներկայիս միջազգային քաղաքականության կատեգորիկ իմպերատիվը: «Արդիականության հիմնական հարցը պատերազմի և խաղաղության հարցն է» (Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագիրը, էջ 88): Այն դարձել է ո՛չ միայն առանձին դասակարգերի կամ ազգերի, այլև յուրաքանչյուր մարդու և համայն մարդկության կենաց ու մահվան հարցը: Այն, բնականաբար, չի կարող չհուզել ժամանակակից երիտասարդությանը, չի կարող չանդրադառնալ երիտասարդական շարժման վրա: Ինչպես Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցությանն ուղղված իր նամակում հայտարարեց Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան, եվրոպական առաջադեմ երիտասարդությունը գիտակցում է իր պատասխանատվությունը կայուն խաղաղության համար մայրցամաքում և ամբողջ աշխարհում, նա ո՛չ միայն իրադարձությունների ականատեսն է, այլև խաղաղության, անվտանգության ու համագործակցության համար ծավալված պայքարի ակտիվ մասնակիցը:

Պետությունների համաեվրոպական խորհրդակցությունը միջազգային ասպարեզում կատարվող դրական տեղաշարժերի լավագույն վկայությունն էր, կարևորագույն քայլը «լարվածության թուլացման նյութականացման» մարզում, ինչպես խորհրդակցության ընդհանուր արդյունքը գնահատեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը: «Դա, միաժամանակ,— շեշտեց նա,— գալիքի իմաստավորումն է՝ ելնելով այսօրվա իրողություններից և Եվրոպայի ժողովուրդների բազմադարյան փորձից»: Գալիքի, ապագայի մասին հոգածությունն իսկ խորհրդակցության ամենաբնորոշ գիծն է, ուստի և այն էապես կապվում է գոյություն ունեցող սոցիալական հարաբերությունների ժառանգորդի, վաղվա հասարակական-քաղաքական պրոցեսների անմիջական կրողի՝ ժամանակակից երիտասարդության գործունեության հետ: Ավագ սերունդները, վերապրելով երկրորդ համաշխարհային պատերազմի սարսափները, կարողացան դասեր առնել պատմությունից և հասան Եվրոպայի հետպատերազմյան կյանքում ամենաակնառու իրադարձությանը՝ բանականության և քաղաքական ռեալիզմի ուշագրավ հաղթանակին: Ներկայիս սերնդին վիճակված է իր ուսերին կրելու Եվրոպայի և ամբողջ աշխարհի անամպ ապագայի համար պատասխանատվության ողջ ծանրությունը: Եվ աշխարհի առաջադեմ երիտասարդությունը գործով է ապացուցում իր վճռականությունը՝ շարունակելու, է՛լ ավելի զարգացնելու միջազգային կյանքի ներկայիս բարելավումները: Այս առումով հատկանշական էր սովետա-ամերիկյան երիտասարդության հերթական՝ չորրորդ հանդիպումը Չիկագոյում, 1974 թ. օգոստոսին, որի նշանաբանն էր՝ «Շարունակենք ավագների երկխոսությունը»: Նույն ոգով անցավ նաև Խաղաղ օվկիանոսի ավազանում համագործակցության պրոբլեմների երիտասարդ հետազոտողների երկրորդ միջազգային սեմինարը սովետական Նախոդկա քաղաքում:

Հասկանալի է, անշուշտ, որ միջազգային լարվածության թուլացումն ինքնին չի վերացնում երիտասարդական տարբեր կազմակերպությունների դասակարգային կողմնորոշումներում եղած տարբերությունները, ինչպես և գաղափարական ու աշխարհհայացքային տարաձայնությունները: Իր հերթին, միջազգային կյանքի առողջացման պրոցեսի ողջ բարդությունն ու հակասությունն արտացոլվում է երիտասարդական շարժման միտումների բազմազանության մեջ: Սակայն, ընդհանուր առմամբ, քաղաքական ներկա իրադրությունը, միջպետական հարաբերություններում կատարվող դրական տեղաշարժերը լայն հնարավորություններ են ընձեռում աշխարհի երիտասարդության բազում ջոկատների միջև կապերի կայունացման, առաջադեմ հասարակայնության գործունեության մեջ երիտասարդության լումայի մեծացման համար: Այդ միտումներին մասնավորապես կխթանի երիտասարդության համաեվրոպական

վստահությունը, օրեցօր թանկացող ապրուստը անհետք չեն մնում աճող սերնդի հոգեբանության համար։ Բուրժուական իրականության քայքայիչ ազդեցությունը՝ կեղծ արժեքները, «մասսայական կուլտուրայի» ստեղծած հեղձուցիչ մթնոլորտը, թմրադեղերը, բռնությունն ու հանցավոր աշխարհը, միայնակության աճող զգացումը հանգեցնում են անձնական ողբերգությունների. երիտասարդության շրջանում ավելի է մեծանում ինքնասպանությունների թիվը։ Դեմոկրատիայի ու հավասարության պատրանքների փլուզումը, հավատի կորուստը սոցիալական վերափոխումների իրականացման նկատմամբ բազմաթիվ երիտասարդների ու աղջիկների մղում են դեպի կրոնական միստիցիզմ. ձևավորվում են նոր աղանդներ։ Բուրժուական ապրելակերպին ներհատուկ շահերի ու նպատակների քաոսը, անտագոնիզմը կապիտալի ու աշխատանքի միջև, փաստացի անհավասարությունն ու սոցիալական դեմագոգիան, անհատապաշտության ու սեքսի պրոպագանդան բացասաբար են անդրադառնում աճող սերնդի բարոյաքաղաքական ձևավորման վրա, անխուսափելիորեն արտացոլվում են երիտասարդական շարժման մեջ, պայմանավորում դրա տարբերայնությունը, քաղաքական անփորձությունը, գաղափարական խառնաշփոթը, անցումը մի ծայրահեղությունից մյուսին։ Շատ երիտասարդներ ընկնում են ֆաշիստական, սիոնիստական, ռասիստական և հետադիմական ու հանցավոր այլ կազմակերպությունների ցանցը, լրացնում դրանց գրոհային ջոկատների շարքերը։ Մյուս կողմից, բուրժուական վիթխարի պրոպագանդիստական մեքենան, մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, կինոն ձգտում են երիտասարդներին համակել «սպառողական» ձգտումներով, հասնել «ըմբոստ» սերնդի «խաղաղ» ինտեգրացմանը՝ եղած համակարգում։ Երիտասարդական շարժման վրա իր դրոշմն է թողնում նաև արդի գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական կարևոր հետևանքներից մեկը՝ աշխարհում ուսանողների թվի բուռն աճը։ Բանն այն է, որ զարգացած կապիտալիստական երկրներում ուսանողության 70—80 տոկոսը կազմում են մանրբուրժուական ընտանիքների զավակները, որոնք իրենց անկայուն հոգեբանությամբ ավելի խոցելի են «գերձախության» գաղափարախոսության համար, քան աշխատավոր երիտասարդությունը։

Այս առումով խիստ բնութագրական էր ԱՄՆ-ում 60-ական թվականների «նոր ձախերի» շարժումը, որի հիմնական կորիզը երիտասարդությունն էր։ Բուրժուական հասարակության բարոյական և գաղափարախոսական ճգնաժամը, ռասայական խտրականությունը, «սառը պատերազմի» հետևանքները, ռազմական նպատակներով վիթխարի ծախսումները և, մասնավորապես, պատերազմը Վիետնամում, որին զոհ գնացին 56 հազար ամերիկյան երիտասարդներ, պատճառ դարձան 50-ական թվականների «խաղաղ սերնդի» ձախացմանը։

Պայքարելով քաղաքացիական իրավունքների համար, ընդվզելով բուրժուական սին արժեքների ու բարքերի քայքայիչ ազդեցության դեմ, ձգտելով իրական ազատության՝ ձախ ռադիկալները, սակայն, փորձում էին միջավայրի անհատապաշտական ոգին, կապիտալիստական մրցակցության այլասերող ազդեցությունը հաղթահարել Է. Ֆրոմի «համընդհանուր սիրո քարոզի» միջոցով։ Ըմբոստանալով առկա իրականության, մարդու կողմից մարդու շահագործման, բուրժուական ողջ ապրելակերպի դեմ, տիրող սոցիալական կարգը ենթարկելով «տոտալ քննադատության», պահանջելով «անհապաղ հեղափոխություն», «նոր ձախերը», սակայն, Հ. Մարկուզեի ձախ ռադիկալային ուտոպիստական սոցիալիզմի ազդեցության շնորհիվ, իրականում չէին հավատում հասարակության հեղափոխական վերափոխումների ուղուն, մնում էին լոկ բարոյախոսական քննադատության շրջանակներում, չէին ընդունում բանվոր դասակարգի հեղափոխական դերը, այն վերագրում էին գիտատեխնիկական ինտելիգենցիային՝ չափազանցնելով վերջինիս հնարավորությունները, սխալ գնահատելով ինտելիգենցիայի՝ հասարակական կյանքում ունեցած տեղի և նշանակության ռեալ փոփոխությունները։ Իր պոռթկման մեջ խորապես հումանիստական այս շարժումն անխուսափելիորեն դեմ առավ գաղափարական



ու քաղաքական փակուղու, ապրեց կազմակերպական խոր ճգնաժամ։ «Նոր ձախերի» առաջադեմ-դեմոկրատական հոսանքի շատ մասնակիցներ ի վերջո հանգեցին բանվոր դասակարգի հետ միասնության և համերաշխության անհրաժեշտության գաղափարին, գիտակցեցին դասակարգային շահերի գերադասությունն ուսանողական շահերի նկատմամբ, աստիճանաբար ազատվեցին «ձախության» հիվանդությունից, ծայրահեղության պատրանքներից և դիմեցին մարքսիզմին։ Մինչդեռ «նոր ձախերի» մյուս ուղղության ներկայացուցիչները՝ ձախ ծայրահեղականները, մնացին անարխիզմի, տրոցկիզմի, մարկուզեականության, մաոիզմի և այլ «իզմերի» գաղափարախոսության ազդեցության ներքո։ «Պարտիզանական պայքարի», քաղաքների «ջունգլիներում» համատարած տեռորի իրենց կեղծ հեղափոխական կոչերով այդ «գերձախերը», վերջին հաշվով, վնասում են կապիտալիստական երկրների առաջադեմ երիտասարդության պայքարին։

Պետք է նշել, որ թեև ձախ ռադիկալիզմի գաղափարախոսությունը դեռևս ուժեղ ազդեցություն ունի ամերիկյան երիտասարդության վրա, սակայն ներկայումս նրա գիտակցության մեջ սկսել են գերակշռել նեոպահպանողական միտումները։ 70-ական թվականների նեոպահպանողականության վերելքը փաստորեն 60-ական թվականների ձախ ռադիկալիզմի ծայրահեղ ծրագրերի յուրօրինակ ռեակցիան է։

Ներկայիս երիտասարդական շարժումը կապիտալիստական երկրներում, իր ողջ հակասականությամբ հանդերձ, բնութագրվում է հեղափոխական պայքարին ավելի լուրջ, հասուն մոտեցմամբ։ Աճում է կոմունիստական ու բանվորական երիտասարդական միությունների հեղինակությունը, ակնհայտ է երիտասարդ սոցիալիստների, լիբերալների, քրիստոնյա դեմոկրատների, ռադիկալների մերձեցումը երիտասարդ կոմունիստների միությունների հետ, հակամոնոպոլիստական պայքարի, համադեմոկրատական վերափոխումներին ուղղված համատեղ պլատֆորմի հիման վրա։ Միջազգային լարվածության թուլացումը և, հատկապես, Հելսինկիում խաղաղասեր ուժերի ակնառու հաղթանակը՝ նոր քաղաքական իրադրություն ստեղծելով ամբողջ աշխարհում, երիտասարդ, գաղութատիրության լուծը թոթափած պետություններին հնարավորություն են ընձեռում անկաշկանդ շարժվելու սոցիալ-տնտեսական վերափոխումների ուղիով, հաջողությամբ դիմակայելու իմպերիալիզմի, սիոնիզմի և ռասիզմի ոտնձգություններին։

Հասարակական-քաղաքական այս պայմաններում է ծավալվում «երրորդ աշխարհի» երիտասարդության շարժումը, երիտասարդություն, որը կազմում է բնակչության երկու երրորդից ավելին։ Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երիտասարդական և ուսանողական բազմաթիվ միությունները, գաղափարական տարաձայնություններով հանդերձ, պատշաճ միասնություն են դրսևորում հիմնական հարցերում, պայքարում գաղութատիրության մնացորդների դեմ, տնտեսական անկախության, աճող սերնդի առաջադեմ աշխարհայացքի ձևավորման, արտադրության ընդլայնման, անգրագիտության վերացման համար։ Առաջադեմ երիտասարդությունը պայքարում է հանուն այն բանի, որ գիտատեխնիկական առաջընթացի հեռանկարները ծառայեն ոչ թե օտարերկրյա մոնոպոլիաներին կամ տեղական կապիտալիստներին ու ֆեոդալներին, այլ աշխատավոր ժողովրդի ամենալայն զանգվածներին։ Այս առումով հատկանշական էր 1972 թ. Ալժիրում «Պատանեկությունը մերկացնում է իմպերիալիզմը» համաշխարհային կամպանիայի շրջանակներում հրավիրված միջազգային կոնֆերանսը՝ «Երիտասարդության դերը ազգային բնական հարստությունների վերականգնման համար մղված պայքարում» թեմայով։ «Երրորդ աշխարհի» երիտասարդների միավորման ձգտումների հաստատումը դարձավ այս տարվա օգոստոսին արաբական երկրների ու Աֆրիկայի երիտասարդության անդրանիկ կոնֆերանսի հրավիրումը Բաղդադում, որի նշանաբանն էր համերաշխություն, համագործակցություն և կոորդինացիա։ Այն երիտասարդ սերնդի համագործակցության ու համախմբման կոնկրետ ուղիներ նա-

խանշեց ազգային-ազատագրական շարժմանն աջակցելու նպատակով, հանուն զարգացող երկրների քաղաքական ու տնտեսական անկախության։

Ներկայումս երիտասարդության դերը հասարակական կյանքում հատկապես մեծ է այն երկրներում, որոնք ընտրել են զարգացման ոչ կապիտալիստական ուղին, որտեղ ղեկավար կուսակցությունները նպատակադրվել են իրագործել սոցիալ-քաղաքական բարեփոխումներ հօգուտ աշխատավորական զանգվածների։ Եգիպտոսում, Հնդկաստանում, Կոնգոյում, Ալժիրում, Սիրիայում, Իրաքում, Գվինեայում, Սոմալիում մեծ ուշադրություն է նվիրվում երիտասարդ սերնդի գաղափարական, քաղաքական դաստիարակությանը, երիտասարդական շարժման աջակցությանն ու ղեկավարմանը։ Ուրախալի է, որ զարգացող երկրների երիտասարդական և ուսանողական առաջադեմ կազմակերպություններն սկսել են ավելի ակտիվ մասնակցել երիտասարդության համաշխարհային միջոցառումներին, փառատոնային շարժմանը։

Միջազգային երիտասարդական շարժման մեջ հատուկ տեղ է գրավում սոցիալիստական երկրների երիտասարդական և ուսանողական կազմակերպությունների գործունեությունը, որը բնութագրվում է սոցիալիստական աշխարհի երիտասարդության տարբեր ջոկատների հարաճուն համախմբվածությամբ, քաղաքական միասնությամբ, գաղափարական մերձեցմամբ, սոցիալիստական ինտերնացիոնալիզմով։ «Դժվար է գերագնահատել սոցիալիստական երկրների կոմերիտմիության և ձեր հասակակիցների գործունեության նշանակությունն ամբողջ աշխարհի աշխատավոր և բովանդակ առաջադեմ երիտասարդության համար»— ՀամԼԿԵՄ XVII համագումարում, դիմելով պատվիրակներին՝ ասաց Լ. Ի. Բրեժնևը։

Այս տարվա ապրիլին սոցիալիստական համագործակցության երկրների ուսանողների մոսկովյան հանդիպման մասնակիցները, դիմելով սոցիալիզմի աշխարհի երիտասարդներին, կոչ արեցին «ամրապնդել սոցիալիստական համագործակցության երիտասարդության և ուսանողների միասնությունն ու համախմբվածությունը, անել ամեն բան, որպեսզի երկրագնդի մարդիկ այդ համագործակցության մեջ տեսնեն ազատ ժողովուրդների համաշխարհային ընկերության նախատիպը»։ Սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար պայքարող երիտասարդ սերնդի գործունեության լավագույն գնահատականն էր տրված՝ հանդիպման մասնակիցներին ընկեր Բրեժնևի հղած ողջույնում. «Ուրախալի է գիտակցել, որ սոցիալիստական երկրների երիտասարդությունը, ուսանողությունը սոցիալիզմի և կոմունիզմի հաստատման համար ծավալված պայքարում անսպառ ուժեր ու ոգևորություն են քաղում մարքսիզմ-լենինիզմից»։

Մեր երկրի երիտասարդական և ուսանողական կազմակերպությունները, հավատարիմ իրենց ինտերնացիոնալիստական ավանդույթներին, գտնում են բազում երկրների երիտասարդական կազմակերպությունների հետ կապերի ընդլայնման նորանոր ձևեր։ Սովետական երիտասարդությունը, ՍՍՀՄ ուսանողական խորհուրդը լայն աշխատանք են ծավալում աշխարհի 130 երկրներից մեր երկիրն ուսանելու եկած 40 հազար սովորողների շրջանում։ Հատկապես արդյունավետ են երկու տարին մեկ Մոսկվայում հրավիրվող միջազգային ուսանողական դասընթացները։

ԱՅՍՊԻՍՈՎ, աշխարհի երիտասարդությունը՝ իբրև կազմակերպված, միավորված ուժ, վիթխարի դեր է խաղում արդի միջազգային կյանքում։ Վերջին տարիների համաշխարհային պատմական իրադարձությունների ողջ ընթացքն ապացուցում է, որ աշխարհի առաջադեմ երիտասարդությունը, «եռուն, փոթորկվող և որոնող» երիտասարդությունը, ինչպես նրան բնորոշում էր Վ. Ի. Լենինը (Երկեր, հատ. 23, էջ 209), ներկայումս կարողանում է գտնել գործողությունների միավորման արդյունավետ ուղիներ, ընդլայնում է իր ներդրումը մոլորակի դեմոկրատական ուժերի պայքարում՝ հանուն խաղաղության, անվտանգության ու սոցիալական առաջիմության։

# ՄԻՆԻՍՏՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿԱԴՐԵՐԸ

**Գ. Խ. ՄԱՆՈՒԿՅԱՆ**
ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ղեկավար կադրերի բաժնի պետ

Կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը մշտապես գտնվում են կոմունիստական կուսակցության ուշադրության կենտրոնում։ Ժողովրդական տնտեսությունն իր զարգացման տարբեր փուլերում նոր պահանջներ է ներկայացնում կադրերին։ Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից մեր կուսակցությունը հոգում է երկրի կառավարման և ճիշտ կազմակերպման, կադրերի նպատակահարմար տեղաբաշխման և ճիշտ օգտագործման մասին։ Կադրերի ընտրության, դաստիարակման, կազմակերպչական աշխատանքի բարելավման հարցերին հատուկ ուշադրություն էր հատկացնում և մեծ հոգածություն ցուցաբերում Վ. Ի. Լենինը։ Նա պահանջում էր ղեկավարման գործում ներգրավել կազմակերպչական տաղանդով օժտված մարդկանց՝ ունակ հմտորեն վարելու պետական ու տնտեսական մարմինները։

Ելնելով լենինյան ցուցումներից և տվյալ ժամանակաշրջանի խնդիրներից, կուսակցությունն անդուլ բարելավում է կազմակերպչական աշխատանքի ձևերն ու մեթոդները, բարձրացնում կադրերի հետ տարվող աշխատանքի մակարդակը։ ՍՄԿԿ ծրագրում ասված է. «Տնտեսության ղեկավարման ապարատում վճռական նշանակություն ունի կադրերի ընտրությունը, դաստիարակումն ու առաջքաշումը, որոնք անմիջականորեն ղեկավարում են ձեռնարկություններն ու կոլտնտեսությունները, զբաղվում են արտադրության կազմակերպմամբ ու նրա կառավարմամբ։ Այն ոլորտը, որտեղ ստեղծվում են նյութական արժեքները, հասարակության կյանքի գլխավոր ոլորտն է։ Ուստի անհրաժեշտ է արտադրական ձեռնարկությունները ղեկավար աշխատանքի ուղարկել լավագույն կադրեր» (էջ 138)։

ՍՄԿԿ XXIV համագումարում, Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Հասարակության կյանքի բոլոր կողմերի ղեկավարման, մասսաների մեջ տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացումը անխզելիորեն կապված է կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության բարելավման հետ։ Մեր կուսակցությունն այժմ այդ տեսակետից հսկայական հնարավորություններ ունի» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 413)։ Համագումարի որոշումները կուսկազմակերպությունների և տնտեսական օրգանների գործունեության ուղեցույց են, որոնցով և առաջնորդվում է ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության ղեկավարությունը։

Ամեն տարի մինիստրության ձեռնարկություններն են գործուղվում բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատություններն ավարտած հարյուրավոր մասնագետներ (մեր սիստեմում այժմ աշխատող ավելի քան 4.500 մասնագետից 1.650-ը բարձրագույն կրթություն ունի)։ Նոմենկլատուրային աշխատողների մոտ 70 տոկոսն ավարտել է բարձրագույն ուսումնական հաստատությունները. ձեռնարկությունների դիրեկտորների 86 տոկոսն ունի բարձ-

որակի բարձրացման համար կոլեկտիվների ստանձնած սոցպարտավորու-
թյունների կատարմանը։
Երևանի կոշկի արտադրական «Մասիս» միավորման գլխամասային, այդ
միավորման մոդելային կոշկի, Լենինականի Ջկալովի անվան կարի ֆաբրի-
կաներում, Սովետաշենի տրիկոտաժի արտադրական միավորումում թողարկ-
վող արտադրանքի որակի բարելավման նպատակով կազմակերպվել են որակի
կառավարման բաժիններ։ Մինիստրության ձեռնարկություններում լայն ար-
ձագանք է գտնում Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ
կոմբինատի երիտասարդ բանվորների, ննթավարպետների և վարպետների
նախաձեռնությունը—կոմպլեքսային համագործակցություն-մրցություն ծա-
վալել աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերազանց որա-
կի արտադրանքի ավելացման համար։ Այս ամենի շնորհիվ մինիստրության
ձեռնարկություններում ավելացել է որականիշով թողարկվող արտադրանքի
քանակը։ Այսպես՝ 1975 թ. առաջին կիսամյակում թողարկվել է պետական ո-
րականիշ ունեցող 61 տեսակի արտադրանք՝ 19,5 մլն ռուբլի գումարով։
Հարկ է հիշատակել Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի, Լենինականի
Մայիսյան ապստամբության անվան կոմբինատների, Երևանի կոշկի արտա-
դրական «Մասիս», կարի արտադրական «Գարուն» միավորումների կոլեկտիվ-
ների դրական աշխատանքը։ Սպառողները գոհ են Երևանի կոշկի արտադրա-
կան «Մասիս» միավորման, նույն միավորման 6-րդ ֆաբրիկայի, կարի ար-
տադրական «Գարուն» միավորման թողարկած արտադրանքից, Լենինականի
Ջկալովի անվան կարի ֆաբրիկայի մանկական հագուստներից, Սովետաշենի
տրիկոտաժի արտադրական միավորման գործվածքներից։
Հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության սիստե-
մում անհրաժեշտ աշխատանք է տարվում արտադրանքի նոր տեսականու թո-
ղարկման համար։ Այսպես, ընթացիկ տարվա 8 ամսում ներդրվել է կոշկի 270
(նորացվել է 90 տոկոսով), իսկ կարի արտադրությունում՝ 310 նոր մոդել (68
տոկոսով)։ Մեր առաջավոր բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխա-
տողները ջանք չեն խնայում՝ տալու մոդելային նոր արտադրատեսակներ։ Հա-
զարավոր բանվորներ ու բանվորուհիներ այս տարվա սկզբից աշխատում են
գալիք՝ տասներորդ հնգամյակի հաշվին։ Մեր հանրապետությունում լայն ճա-
նաչում են գտել ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատներ, Երևանի Լենինի ան-
վան մետաքսի կոմբինատի ջուլհակուհի Գրետա Ալեքսանյանը, Լենինականի
տեքստիլ կոմբինատի ջուլհակուհի Լյուդմիլա Սինևան, կաշվի արտադրական
միավորման մամլող Հռիփսիմե Սիմոնյանը, սոցիալիստական աշխատանքի
հերոսներ՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան մետաքսի կոմբինատի ջուլհակուհի
Ծաղկանուշ Գալիմտերյանը, նուրբ-բրդյա գործվածքեղենի կոմբինատի ջուլ-
հակուհի Մարուսյա Մարգարյանը, Լենինականի տեքստիլ կոմբինատի ննթա-
վարպետ Գարեգին Տոնոյանը և ուրիշներ։ Նրանք տալիս են բարձրորակ արտա-
դրանք։ Այդ ամենը կադրերի պատասխանատվության բարձրացման արդյունք
է։ Նրանք ավելի շատ ուշադրություն են նվիրում աշխատանքի կուլտուրայի,
կազմակերպվածության, աշխատանքային կարգապահության բարձրացմանը,
որակի բարելավմանը, առավել արդյունավետ են օգտագործում նորագույն
տեխնիկան։
ՀՍՍՀ թեթև արդյունաբերության սիստեմի շատ աշխատողներ ըմբռնել են
արտադրության արդյունավետության բարձրացման կարևորությունը։ Սակայն,
ցավոք, դեռևս կան ոչ միայն արտադրամասեր, այլև ձեռնարկություններ,
որոնք տեխնիկա-տնտեսական ցուցանիշների կատարմամբ ետ են մնում, թո-
ղարկում ցածրորակ արտադրանք։ Այս առումով վիճակն անմխիթար է մաս-
նավորապես Լենինականի գուլպա-նասկեղենի միավորումում, «Կրասնի շվեյ-
նիկ» կարի ֆաբրիկայում, որոնց արտադրանքը քիչ պահանջարկ ունի։ Այս
ձեռնարկություններում նկատվում են տեխնոլոգիական պրոցեսների խախ-
տումներ, շռայլվում են նյութական արժեքները և այլն։ Այդ մասամբ էլ ար-
դյունք է կադրերի ընտրության սկզբունքի խախտման։ Հաճախ աշխատանքա-
յին տեղերն զբաղեցնում են ոչ մասնագետներ։ Կարի որոշ ձեռնարկություննե-



րում ինժեներա-տեխնիկական պաշտոնները վարում են մասնագիտական կրթություն չունեցող մարդիկ, և դա այն ժամանակ, երբ միայն բանվորական տեղերում աշխատում են ավելի քան 100 տեխնիկ-տեխնոլոգներ։ Նման փաստեր կան նաև մեր մյուս ձեռնարկություններում։ Սա հետևանք է այն բանի, որ առանձին ձեռնարկությունների ղեկավարներ երբեմն անվստահություն են ցուցաբերում նորավարտ մասնագետների և, հատկապես, տեխնիկների նկատմամբ։ Մասնագետների ճիշտ տեղաբաշխումն ու օգտագործումը մեծապես կբարձրացնեն նրանց դերն ու պատասխանատվությունը՝ ձեռնարկությունների առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։

Ղեկավար մարմինների որոշմամբ Լենինական քաղաքում բացվել է Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի մասնաճյուղը, որը խնդիր ունի հանրապետության թեթև արդյունաբերության օբյեկտներն ապահովել մասնագետ կադրերով։ Մասնաճյուղն արդեն հինգերորդ շրջանավարտներն է տալիս, բայց, դժբախտաբար, նրանց ճնշող մեծամասնությունը գերադասում է մնալ Լենինականում, թեկուզ և որպես բանվոր։ Պատճա՞ռը. ընդունելությունը հիմնականում կատարվում է տեղի բնակիչներից։ Մեր կարծիքով, մասնաճյուղի ղեկավարները պետք է մտահոգվեն, որպեսզի այսուհետև ինստիտուտում ընդգրկվեն նաև հանրապետության այլ քաղաքների երիտասարդներ, որոնք սիրով կաշխատեն իրենց ծննդավայրում։

Կադրերի ընտրությունը, դաստիարակումն ու տեղաբաշխումը կուսակցական պետական կարևոր գործ է։ Հետևաբար, դրանով պետք է զբաղվել հետևողականորեն, պլանաչափ ու կոմպլեքսայնորեն։ Կազմակերպչական միջոցառումներին զուգընթաց, հարկ է մտահոգվել կադրերի գաղափարական մակարդակի բարձրացմամբ, նրանց մասնագիտական գիտելիքների հարստացմամբ։ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմի աշխատողները, ուղեցույց ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի՝ «ՍՄԿԿ XXV համագումարը արժանավայել դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցության մասին» որոշումը, իրենց ջանքերը գործադրում են անթերի կատարելու համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական նոր և բարձր պարտավորությունները։

# ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ

## ՇՐՋԱՆԻ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

**Հ. Հ. ՏՈՆՈՅԱՆ**
Հկկ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար

ԱՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ հրա-
վիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1975 թ. ապրիլ-
յան պլենումի որոշումը ջերմ արձագանք գտավ մեր բազմազգ երկրի աշխա-
տավորների շրջանում: Յուրաքանչյուր համագումար նշանակալի իրադարձու-
թյուն է կոմկուսակցության և սովետական ժողովրդի կյանքում: Ահա թե ինչու
այդ կարևոր իրադարձությունն արժանավայել դիմավորելու ձգտումն այսօր
դարձել է բոլոր կոմունիստների ու աշխատավորների գործունեության հիմնա-
կան խնդիրը:

Անցնող ամեն մի օր մեզ ավելի է մոտեցնում իններորդ հնգամյակի եզ-
րագծին, կուսակցության հերթական համագումարին: Իսկ ամենալավ նվերը
դրան նախորդող համագումարի որոշումների, իններորդ հնգամյակի պլանի
վերաբերյալ դիրեկտիվների անթերի կատարումն է: Այս առումով Ախուրյանի
Շրջանի կուսկազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները հասել
են որոշակի հաջողությունների:

Ախուրյանը հացահատիկի ու շաքարի ճակնդեղի արտադրությամբ հանրա-
պետության ամենախոշոր շրջանն է, իսկ անասնապահական մթերքների ար-
տադրությամբ գրավում է չորրորդ-հինգերորդ տեղը: Այստեղից էլ մեր առջև
ծառացած խնդիրների բարդությունը: Եվ երբ կուսշրջկոմի բյուրոյում քննարկ-
վում էին իններորդ հնգամյակի խնդիրները, լուրջ խոսակցություն ծավալվեց
դրանց լուծման ուղիների շուրջ: Բանն այն էր, որ շրջանի շատ տնտեսություն-
ներ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասունների մթե-
րատվության նախատեսված զգալի աճը պետք է ապահովեին, ելնելով նախորդ
հնգամյակում նվաճած բարձր բնագծերից: Դա լուրջ պրոբլեմ էր, որի իրակա-
նացումը մեծ ջանքեր ու հմտություն էր պահանջում շրջանային կուսակցական,
սովետական ու տնտեսական մարմիններից, տնտեսությունների ղեկավարնե-
րից ու կուսկազմակերպություններից: Ամենից առաջ անհրաժեշտ էր հայտա-
բերել ու գործողության մեջ դնել նոր հնարավորություններ ու ռեզերվներ, ար-
տադրության մեջ արմատավորել գյուղատնտեսական գիտության նվաճումնե-
րը, առաջավոր տնտեսությունների փորձը, բարձրացնել դաշտավարության ու
անասնապահության վարման կուլտուրան, ցանքերի մշակության մեքենայաց-
ման մակարդակը: Հնգամյակի տարիներին այս խնդիրները քանիցս քննարկ-
ման առարկա են դարձել կուսշրջկոմի պլենումներում, բյուրոյի նիստերում,
կուսակցական ժողովներում:

Կուսշրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների հսկողությամբ



և գյուղատնտեսական մասնագետների ջանքերով վերջին տարիներին արտա-
դրության մեջ լայնորեն ներդրվում են գիտության նվաճումներն ու առաջավոր
փորձը, իրականացվում է ճիշտ ցանքաշրջանառություն, ցանքը կատարվում է
բարձր բերքատու սորտերի սերմացուով: Արդեն մի քանի տարի է, ինչ Ախուր-
յանի փորձակայանում աճեցվում են ցորենի մի քանի տեսակներ, որոնք բարձր
բերքատու են Շիրակի դաշտավայրում: Անցած տարի, օրինակ, «Բեզոստա-
յա—1» աշնանացան ցորենի ցանքադաշտերի ամեն մի հեկտարից ստացվեց
55 ցենտներ բերք: Եկող հնգամյակում մեր դաշտավարների խնդիրը կլինի ան-
պայման հասնել փորձադաշտերի արդյունքներին: Ազատանի կոլտնտեսությու-
նում նախկինում մեկ հեկտարից ստացվում էր 21 ցենտներ բերք, մինչդեռ
ճիշտ ցանքաշրջանառության կիրառումից հետո բերքատվությունն ավելացավ
8—10 ցենտներով:

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման լավ
նախապայման է ցանքադաշտերի պարարտացումը օրգանական ու հանքային
պարարտանյութերով՝ ըստ հողի կառուցվածքի քարտեզների: Եթե ութերորդ
հնգամյակում շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները օգտագործել էին
ութ հազար տոննա հանքային պարարտանյութեր, ապա ընթացիկ հնգամյա-
կում այն հասավ 10.500-ի: Պարարտացման և մշակության աշխատանքների
ճիշտ կազմակերպման շնորհիվ հեկտարի բերքատվությունն ավելացավ 25
տոկոսով:

Վերջին մեկ-երկու տարվա փորձը մեզ համոզել է, որ թունաքիմիկատների
և հերբիցիդների օգտագործման շնորհիվ լրիվ չափով ոչնչանում են մոլախո-
տերը և զգալիորեն բարձրանում է ցանքադաշտերի բերքատվությունը: Հերբի-
ցիդների կիրառումը հատկապես մեծ օգուտ է տվել Ազատանի, Ախուրյանի,
Բայանդուրի տնտեսություններին, սելեկցիոն կայանին:

Վերջին երկու տարում նախկին նվազ արտադրողականությամբ կոմբայն-
ներն իրենց տեղը զիջել են ՍԿ—5 «Նիվա» կոմբայններին, որոնց ժամային
արտադրողականությունը 1,5—2 անգամ բարձր է: Այս մեքենաներով բերքը
հավաքելիս հացահատիկի կորուստը լրիվ բացառվում է: Ձեռք բերված 70 տար-
բեր մակնիշի քիմիական պարարտանյութեր և գոմաղբ ցրող մեքենաների շնոր-
հիվ պարարտացման աշխատանքները լրիվ մեքենայացվել են: Տնտեսություն-
ներն ունեն մեքենատրակտորային հարուստ հավաքակայաններ ու շատ գործեր
վստահել են տեխնիկային: Շրջանում աճել են իրենց գործին գիտակ տրակտո-
րիստ-մեքենավարներ: Անվանի կոմբայնավարներ, Սոցիալիստական աշխա-
տանքի հերոս Հ. Մինասյանը (Արևիկ), Ք. Քերոբյանը (Հայկավան), Վ. Վար-
ժապետյանը (Ազատան) և շատ ուրիշներ բարձր արտադրողական աշխատանքի
հիանալի օրինակներ են տալիս: Նրանց առաջավոր փորձը, վարպետությունը
սիրով են յուրացնում և ընդօրինակում շրջանի մեխանիզատորները: Դրա շնոր-
հիվ է, որ տնտեսություններում դաշտավարական բոլոր տեսակի աշխատանք-
ները կատարվում են բարձր որակով, ագրոտեխնիկայի պահանջներին համա-
պատասխան և սեղմ ժամկետում:

Թվարկված և այլ միջոցառումների շնորհիվ շրջանում տարեցտարի ավե-
լանում էր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Դաշտավար-
ները միայն ընթացիկ տարում 11 հազար հեկտար հացահատիկային կուլտու-
րաների ցանքադաշտերի յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին 25,2 ցենտներ
բերք, որը պլանային առաջադրանքը գերազանցում է 5 ցենտներով: Եթե ութե-
րորդ հնգամյակում շրջանում արտադրվել է 978.245 ցենտներ հացահատիկ,
ապա իններորդ հնգամյակում հացահատիկի համախառն արտադրությունը հա-
սավ 1 մլն 236 հազար ցենտների:

Աննախընթաց հաջողությունների են հասել ճակնդեղագործները: Չնայած
1972 և 1974 թթ. բնակլիմայական աննպաստ պայմաններին, անցած հինգ
տարում նրանք պետական մթերակայան են ուղարկել 3 մլն 398 հազար ցենտ-
ներ շաքարի ճակնդեղ, որը նախորդ հնգամյակի ցուցանիշները գերազանցում
է ավելի քան 350 հազար ցենտներով: Միայն ընթացիկ հնգամյակի եզրափակիչ
տարում շրջանի ճակնդեղագործները, նախատեսված 648 հազարի դիմաց, պե-

տության հանձնել ու վաճառել են ավելի քան 858 հազար ցենտներ շաքարահումք: Ընդ որում, մեկ հեկտարի միջին բերքատվությունը շրջանում կազմել է 400 ցենտներ: Նման բնագծեր ախուրյանցիները նվաճում են առաջին անգամ.

Հացահատիկի և շաքարի ճակնդեղի արտադրության ասպարեզում առավել բարձր արդյունքների են հասել Ազատանի, Մարմաշենի, Հովունիի, Կառնուտի, Ախուրյանի կոլտնտեսությունները, Ջաջուռի, Բայանդուրի, Շիրակի սովխոզները: Նրանք ցանքադաշտերի ամեն մի հեկտարից հավաքում են 30—45 ցենտներ հացահատիկ, 450—550 ցենտներ շաքարահումք:

Բ. Ղարիբջանյանի անվան կոլտնտեսության ճակնդեղագործները շաքարահումքի արտադրության և վաճառքի հնգամյա առաջադրանքը 19 հազար ցենտներով գերակատարել էին դեռևս 1974 թվականին, իսկ այս տարվա համար պլանավորված 21.500-ի դիմաց, նրանք հավաքել և մթերակայան են ուղարկել ավելի քան 32 հազար ցենտներ շաքարի ճակնդեղ: Նույն տնտեսության ճակնդեղագործուհի, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր Նազիկ Վարդանյանի օղակի անդամներն իրենց մշակած պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացել են 580—600 ցենտներ բերք:

***

Կուսակցության XXIV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Մեր առջև ամբողջ սրությամբ կանգնած է նաև գյուղատնտեսության այնպիսի կարևորագույն պրոբլեմ, ինչպիսին է անասնապահության հետագա վերելքը: Բնակչության անխափան կերպով առավել արժեքավոր սննդամթերքներ մատակարարելու, այդ մթերքների նկատմամբ սովետական մարդկանց աճող պահանջմունքը բավարարելու համար նոր հնգամյակում պետք է խոշոր առաջընթաց քայլ կատարվի այդ բնագավառում: Այստեղ անհրաժեշտ է նաև ավելի լրիվ մոբիլիզացնել այն ռեզերվները, որ ունեն կոլտնտեսություններն ու սովխոզները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 64): Իններորդ հնգամյակի տարիներին ընկ. Բրեժնևի արտահայտած այս միտքըն աշխատանքի նշանաբան դարձավ շրջանի կուսկազմակերպությունների, տնտեսությունների ղեկավարների և բոլոր կոլեկտիվների համար: Եվ անասնապահության զարգացման մարզում մեր տնտեսությունները հասան ակնառու հաջողությունների: Այժմ մեր հանրային սեկտորում հաշվվում է 18 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն (որից 6.000-ը կովեր), 50 հազար գլուխ մանրը եղջերավոր անասուն: Անցած հնգամյակի համեմատությամբ, ավելի քան երկու հազարով ավելացել է խոշոր, երեք հազարով՝ մանր եղջերավոր անասունների գլխաքանակը, նվաճվել են իններորդ հնգամյակի վերջին տարվա համար նախանշված բնագծերը: Շրջանն արդեն զեկուցել է նաև անասնապահական մթերքների արտադրության և մթերումների հնգամյա առաջադրանքները կատարելու մասին: Նախորդ հնգամյակի համեմատությամբ, 200 տոննայով ավելացել է միս, 7.500 տոննայով՝ կաթի համախառն արտադրանքը: Մեկ կովի կաթնատվությունը 1.674-ից հասել է 1.900 կգ-ի: Աճել են նաև ոչխարի բրդատվությունն ու հավերի ձվատվությունը: Անասնապահական մթերքների արտադրության և պետությանը դրանց հանձնման գործում առավել բարձր ցուցանիշների են հասել Մարմաշենի, Հովունիի, Բայանդուրի, Ծաղկասարի, Ոսկեհասկի, Արևիկի, Սարիարի, Ջաջուռի տնտեսությունները, որտեղ ամեն մի կովից տարեկան ստանում են 2.500 կգ կաթ, մեկ ոչխարից՝ 3—3,5 կգ բուրդ: Մարմաշենի կոլտնտեսությունում մեկ կովի միջին կաթնատվությունը հնգամյակի եզրափակիչ տարում կազմեց 3.020 կիլոգրամ: Իսկ առաջավոր կթվորուհիներ, Լենինի շքանշանակիր Սաչլու Վարոսյանը, Լիա Եղոյանը, Արաքսյա Մալխասյանը տարեկան ստանում են 3.400—3.500 կիլոգրամ կաթ:

Այս ամենն արդյունք է անասնապահության վարման կուլտուրայի բարձրացման, նորի ու առաջավորի ներդրման, կերի կայուն բազայի ստեղծման: Իններորդ հնգամյակի տարիներին զգալիորեն ընդարձակել ենք կերային կուլտուրաների ցանքատարածությունը, բարձրացրել դրանց բերքատվությունը, ծավալել խոտհարքների ու արոտավայրերի բարելավման լայն աշխատանքներ:



Լուրջ ուշադրություն ենք նվիրել այնպիսի կերի արտադրությանը, որի և՛ բերքատվությունն է բարձր, և՛ սպիտակուցների ու պրոտեինի պարունակությունը: Անցած հնգամյակի համեմատությամբ, առվույտի ցանքատարածությունները ընդարձակել ենք 1.000 հեկտարով, որի շնորհիվ շրջանը, նախորդ տարիների համեմատությամբ, ավել է կուտակում 5.000 տոննա խոտ: Սրանում համոզվելու համար բավական է բերել մարմաշենցիների օրինակը: Կոլտնտեսությունը առվույտի ցանքադաշտերից տարեկան ստանում է երեք բերք և մեկ հեկտարից հավաքում 10—12 տոննա բարձրորակ խոտ: Լրիվ մեքենայացրել ենք ինչպես ցանովի խոտաբույսերի, այնպես էլ եգիպտացորենի մշակության և սիլոսացման աշխատանքները:

Շարունակելով պայքարը ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման և իններորդ հնգամյակի խնդիրների իրականացման համար, շրջանի տնտեսությունները, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, առանձնապես եռանդով աշխատեցին հնգամյակի եզրափակիչ տարում: Շրջանը բոլոր ցուցանիշներով կատարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության և վաճառքի հնգամյակի եզրափակիչ տարվա պլանները: Ընդ որում, բերքատվությամբ ու մթերատվությամբ, ինչպես նաև մթերքների ու կերի արտադրության հասավ հնգամյակի տարիների ամենաբարձր մակարդակին:

Աշխատանքի հնացած ձևերի ու մեթոդների հաղթահարման, նորի ու առաջավորի արմատավորման, կուսակցական-կազմակերպական, գաղափարակրթական աշխատանքների կատարելագործման շնորհիվ էր, որ շրջանի տնտեսությունների մեջ վերջից քայլող Ոսկեհասկի կոլտնտեսությունը նույնպես բռնեց առաջընթացի ուղին: Կոլտնտեսությունը մեկ-երկու տարում կրկնապատկեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի նախորդ տարիների մակարդակը, կատարեց ինչպես եզրափակիչ տարվա, այնպես էլ հնգամյակի առաջադրանքները:

***

Մի քանի տարի առաջ Ախուրյանը հանրապետությունում համարվում էր զուտ գյուղատնտեսական շրջան: Իններորդ հնգամյակում պատկերը փոխվեց: Այսօր մեր շրջանում են գործում հանրապետության մելիորացիայի և ջրային տնտեսության № 2, գյուղական շինարարության № 4 տրեստները, երկաթ-բետոնե կառուցվածքների գործարանը, ճանապարհների շինարարության ու շահագործման № 6 վարչությունը, Լենինականի Ջկալովի անվան կարի ֆաբրիկայի երկու մասնաճյուղեր, Ջաջուռի կրի գործարանը և այլ ձեռնարկություններ, որոնք նույնպես պատվով են լուծում իրենց հնգամյա խնդիրները:

«Հայջրշին» № 2 տրեստի ջրաշինարարների ձեռագիրը կարելի է կարդալ հանրապետության 17 շրջանների լեռնային ամենադժվարին տեղանքներում: Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները՝ տրեստի կոլեկտիվը իններորդ հնգամյակի չորս տարիներին կատարել է ավելի քան 48 մլն ռուբլու շինմոնտաժային աշխատանք, ոռոգելի դարձրել 23 հազար հեկտար հողատարածություն, ջրարբիացրել 29 հազար հեկտար արոտավայր: Տրեստի №№ 1, 2 շինվարչությունների կոլեկտիվների ջանքերով կառուցվեցին մեր շրջանի համար առանձնահատուկ նշանակություն ունեցող Կառնուտի ջրամբարը և Ախուրյանի Աջափնյա ջրանցքը, որոնք ոռոգելի կդարձնեն ինչպես մեր շրջանի, այնպես էլ Արթիկի, Անիի և Ամասիայի շրջանների ավելի քան 14 հազար հեկտար հողեր: Տրեստի կուսկազմակերպության և ղեկավարների առաջիկա խնդիրը պետք է լինի, ոռոգման առաջավոր տեխնիկան արմատավորելու միջոցով ո՛չ միայն բարձրացնել ոռոգման որակը, այլև կրճատել ոռոգման անշահավետ ծախսերը:

***

Ախուրյանի շրջանի արտադրության վերելքը, տնտեսությունների եկամուտների աճը նպաստել են կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացմանը: Հատկապես իններորդ հնգամյակի տարիներին մեր գյուղերն սկսում են նմանվել քաղաքատիպ ավանի: Հիրավի, ի՞նչ համե-

# ՈԳԵՎՈՐԻՉ ՀԱՍՈՒՄՆԵՐ

**Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ**

*Կիրովականի ավտոգենային մեքենաշինության գործարանի կոլեկտիվը հավատարիմ մնաց իր խոստմանը և, իրոք, արժանավայել գործերով է դիմավորում ՍՄԿԿ XXV համագումարը: Հիրավի, իրականում նրա գործերը համահնչուն են եղել ժամանակի կենսական պահանջներին: Տարի առ տարի երիտասարդ ձեռնարկությունն առաջընթացի հաստատուն քայլեր է արել, հզորացել, ձեռք է բերել միութենական հեղինակություն: Իններորդ հնգամյակում էր, որ հաստոցների ու մեքենաների համերգին ձուլվեց քարերի ու երկաթի երգը, ու գործող արտադրամասերին կից հառնեց գլխավոր մասնաշենքը՝ տասը հազար քմ արտադրական մակերեսով: Ճիշտ է, այն շահագործման հանձնվեց ուշացումով, բայց, այնուհանդերձ, խոշոր նվաճում էր ո՛չ միայն արտադրանքի ծավալի մեծացման, այլև այն իմաստով, որ այդտեղ հնարավոր դարձավ արտադրությունը կազմակերպել գիտատեխնիկական առաջընթացի արդի պահանջներին համապատասխան: Չոր թվացող թվերն ու փաստերն ավտոգենցիների հասումների աներկբայելի վկայությունն են: Հաշվեմատյանները հավաստում են, որ, 1970-ի համեմատությամբ, իններորդ հնգամյակի եզրափակիչ տարում համախառն արտադրանքի ծավալը մեծացել է վեց միլիոն 200 հազար ռուբլով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել 60 տոկոսով, չորս տարում ստացվել է 735 հազար ռուբլու արտապլանային օգուտ: Ամենայն իրավամբ սրանք ուրախացնող հասումներ են, որ կարող են պատիվ բերել ուզածդ խոշոր ձեռնարկության կոլեկտիվին: Գործարանի գլխավոր ինժեներ Լևոն Խաչատրյանն անսքող հպարտությամբ հավելում է.*

*— Ութերորդ հնգամյակի վերջին տարում մենք թողարկում էինք քսաներկու տեսակ ավտոգենային սարքավորումներ, այժմ դրանց թիվն անցել է հիսունից: Հնգամյակի բոլոր տարիներին կատարել ենք արտադրական ծրագիրը՝ բոլոր ցուցանիշներով և կոնտրոլ թվերին համապատասխան: Հնգամյակի հետ հաշիվները փակել ենք ժամկետից շուտ:*

*Իսկ ես ուզում եմ նրա ասածին ավելացնել, որ այս գործարանը Սովետական Միությունում ձեռքի ավտոգենային սարքերի միակ մասնագիտացված ձեռնարկությունն է, դրան բաժին է ընկնում նաև երկրում թողարկվող գազաղեղային սարքերի քսան տոկոսը: Այժմ մեր Միության ավելի քան 2.200 հասցեով այն առաքում է գազային ու պլազմային ունիվերսալ կտրիչներ, էլեկտրոդաբռնիչներ ու զոդման գազայրիչներ, գազակտրող մեքենաներ ու հեղուկ վառելանյութի տակառիկներ, լայն սպառման մի շարք առարկաներ: Կիրովականի մակնիշը կրող ավտոգենային սարքերն առաքվում են և սոցիալիստական համագործակցության երկրները, ինչպես և Ֆինլանդիա, Պակիստան ու Աֆղանստան, Իրան ու Թուրքիա, Իրաք ու Նիգերիա, թվով՝ քսաներկու երկրներ:*

* * *

*Գործարանի հնգամյա հասումներում, նրա համամիութենական ու միջազգային ճանաչման գործում ծանրակշիռ ավանդ են մուծել կուսկազմակերպությունը, կոմունիստները: Կուսկոմիտեի ու կուսբյուրոների նիստերի, համագործարանային ու արտադրամասային կուսժողովների արձանագրությունները հագեցած են արտադրության կազմակերպման, տնտեսական խնդիրների լուծման նկատմամբ կուսակցական հոգատարության բազում փաստերով: Հնգամյակի տարիներին կուսկոմիտեն ու կուսկազմակերպություններն օգնության ձեռք են մեկնել այն օղակին, որի դիրքը փոքր-ինչ երերվել է: Այսպես, նոր մասնաշենքի գործարկումը ձգձգվում էր, իսկ պլանը տրված էր:*



*Շուտով գործող արտադրամասերում վերակառուցվեցին, ընդլայնվեցին աշխատատեղերը, տեղադրվեցին ստացված հաստոցներն ու մեքենասարքավորումները, ծավալվեցին մեքենայացման ու ավտոմատացման լայն աշխատանքներ: Այսպիսով, նախադրյալներ ստեղծվեցին հաջորդ տարիների պլանների կատարման համար:*

*Մի այլ օրինակ: Հնգամյակի երրորդ տարին կուսակցությունը հայտարարել էր վճռական, լավ էին աշխատում նաև ավտոգենցիները: Բայց, ահա, հումքը՝ մետաղը, Լենինգրադից ստացվել էր ուշացումով, պլանի կատարումը վտանգվում էր: Ի՞նչ անել: Կոմունիստներն ու կոմերիտականները գործով պատասխանեցին այդ հարցին: Ողջ կոլեկտիվը գործի անցավ, կատարեց պլանը:*

*— Հնգամյակի տարիներին,— բացատրում է գլխավոր ինժեները,— գործարանը համաչափ է աշխատել:*

*Ինժեների ասածը հավաստալի է: Այլ կերպ չի էլ կարող լինել: Հնգամյա նվաճումները դրա վկայությունն են: Իսկ փաստերն իրենց հերթին համոզում են, որ կուսկազմակերպության համար արտադրությանը վերաբերող փոքր ու մեծ խնդիրներ չկան. բոլորն էլ կարևոր են, հարկ է լուծել: Եվ որոնում ու գտնում է լուծման ուղիներ: Այս առումով ուսանելի է զոդման ու գալվանապատման արտադրամասի կուսկազմակերպության գործունեությունը: Այստեղ կոմունիստների ճնշող մասն անմիջաբար աշխատում է արտադրության ոլորտում: Ինքը՝ կուսկազմակերպության քարտուղար Մկրտիչ Ասլանյանը, բրիգադավար է զոդման տեղամասում: Նրա բրիգադն իններորդ հնգամյակի արտադրական ծրագիրը կատարել է 1975-ի օգոստոսի 13-ին: Հնգամյակի բնագծերը նվաճելու մասին զեկուցել է նաև արտադրամասի կոլեկտիվը: Այդ հասումներում արժանի ներդրում ունեն և կոմունիստներ Համլիկ Մարությանի, Բորիս Աշուղաթոյանի, Սինոդ Պողոսյանի ղեկավարած բրիգադները: Ասել է, թե արտադրամասի կոլեկտիվն առաջընթաց է ապրել:*

*Առաջընթացը, սակայն, հենց այնպես չի ապահովվում, այն ջանքերի լարում է պահանջում ու սրտացավություն՝ գործի հանդեպ: Ահա այդ բանը վկայող մի փաստ: Արտադրամասը 1974-ի երրորդ եռամսյակի պլանը կատարել էր 99,5 տոկոսով: Դա լուրջ խոսակցության տեղիք տվեց կուսակցական ժողովում, ուր քննարկվում էին եռամսյակի արդյունքները: Խոսեցին կոմունիստներ Մկրտիչ Ասլանյանը, Ջեմմա Բաղինյանը, Սինոդ Պողոսյանը: Ինքնաքննադական նրանց խոսքն անկեղծ էր, № 4 և № 5 արտադրամասերի հասցեին արված քննադատությունը (նրանք ժամանակին չէին ապահովել անհրաժեշտ մասերով) բխում էր գործի, արտադրության վերելքի շահերից: Ժողովը որոշեց չորրորդ եռամսյակը հայտարարել հարվածային: Կոմունիստներն անհատական պարտավորություններ ստանձնեցին ո՛չ միայն չորրորդ եռամսյակի, այլև որոշիչ տարվա պլանները կատարելու համար: Անկուսակցական բանվորները հետևեցին նրանց օրինակին:*

*Տարին ավարտվեց: Արտադրամասի կուսակցական ժողովն ամփոփեց արդյունքները և գոհունակությամբ նշեց, որ չորրորդ եռամսյակի ու տարվա պլանները գերակատարվել են: Չորրորդ եռամսյակի բարձր արդյունքների համար արտադրամասը սոցիալիստական մրցությունում շահեց մրցանակային երկրորդ տեղը և, շարունակելով հաղթարշավը, եզրափակիչ տարվա առաջին եռամսյակում արժանացավ փոխանցիկ կարմիր դրոշին, իսկ երկրորդ եռամսյակում գրավեց երկրորդ տեղը:*

խոստացած մեկմիլիոներորդը թողարկել դրա նախօրյակին: Այս նախաձեռնությունը լայն արձագանք գտավ № 4 արտադրամասում: Մեխանիկական և № 2 արտադրամասերի կոլեկտիվները պատրաստակամություն հայտնեցին՝ երիտասարդական բրիգադան ժամանակին ապահովել անհրաժեշտ դետալներով, օգնել նրան՝ կատարելու իր խոստումը:

Հանդիպական պլանը կոլեկտիվ նախաձեռնության ցայտուն օրինակ է: Դրանում արտացոլվում է արտադրական կոլեկտիվի պատրաստակամությունը՝ հայտաբերելու և գործադրելու արտադրանքի թողարկումն ավելացնող նորանոր հնարավորություններ ու ռեզերվներ: Ավտոգենցիները պարտավորվել են հնգամյակի եզրափակիչ տարում թողարկել 100 հազար ռուբլու արտապլանային արտադրանք, որից 160 հազարը՝ հանդիպական պլանով: Երբ նրանք ներգրավվեցին կուսակցության XXV համագումարը արժանավայել դիմավորելու համար ծավալված շարժմանը, վերանայեցին իրենց խոստումը, ծանրութեթև արեցին հնարավորություններն ու ռեզերվները և ստանձնեցին 100 հազար ռուբլու լրացուցիչ հանդիպական պլան: Այս և ուրիշ շատ փաստեր վկայում են, որ մարդիկ այստեղ գործում են խղճի մտոք, բարձր գիտակցականությամբ: Կոլեկտիվի դաստիարակության նպատակով կուսկազմակերպության ծավալած կազմակերպական-քաղաքական գործունեությունը լավ պտուղներ է տալիս:

## ՊԱՅՔԱՐ ՈՐԱԿԻ ՀԱՄԱՐ

— Հնգամյակի տարիներին,— ասում է կուսկոմիտեի քարտուղար Ռ. Յարալյանը,— մեր գործարանը բողոքարկներ չի ստացել պատվիրատուներից:

Քարտուղարի ասածը հաստատում է և գլխավոր ինժեները: Եվ նրանց խոսքերում ներքին հպարտության երանգ եմ նկատում: Ավտոգենային բարձրորակ սարքերը, որ այնքա՜ն հարկավոր են արդյունաբերության ամենատարբեր բնագավառներին, շինարարությանն ու գյուղատնտեսությանը, գործարանի կոլեկտիվի պատվի զգացման իրական չափանիշն են: Կուսկոմիտեն և արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունները արտադրանքի որակի համար ծավալված պայքարը համարում են իրենց առաջնահերթ խնդիրը, գործունեության նպատակը: Աչքի եմ անցկացնում կուսկոմիտեի նիստերի ու կուսժողովների արձանագրությունները, ծանոթանում այդ ասպարեզում կուսկազմակերպության գործունեությանը, մշակած ու իրականացրած միջոցառումներին և համոզվում եմ դրանում: Որակի հարցերը պարբերաբար քննարկվում են կուսկոմիտեում և արտադրամասային կուսկազմակերպություններում: Այդ ոլորտում նկատված փոքր խոտորումն իսկ անհանդուրժություն է պատճառում կոմունիստներին: Հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա մարտին կուսկոմիտեի նիստի քննարկմանն էր դրված «Կուսկազմակերպությունների խնդիրները թողարկվող արտադրանքի որակի բարելավման ասպարեզում» հարցը: Առիթն այն էր, որ նախորդ տարում թեև ակներև էր արտադրանքի հուսալիությունը, բարելավվել էր որակը և պատվիրատուներից բողոքարկներ չէին ստացվել, սակայն 4.800 ռուբլու կորուստ էր գոյացել խոտանից, ցածրորակ էին № 1 արտադրամասում պատրաստված փաթեթավորման արկղերը: Այն մասնավորապես ակնբախ էր ԳՍ—3 գազակտրիչի իրանի պատրաստման ժամանակ: Նկատված թերությունները վերացնելու նպատակով կոնկրետ հանձնարարություններ տրվեց № 2 արտադրամասի պետ Մ. Ուլիխանյանին, գլխավոր տեխնոլոգ Ս. Սաֆարյանին, տեխնիկական վերահսկողության բաժնին: Նկատի ունենալով, որ ձուլման արտադրամասը չի համապատասխանում արդի պահանջներին, կուսկոմիտեն առաջարկեց ձեռնարկության տեխնիկական ղեկավարությանը՝ վերադինել այն: Կուսկոմիտեի որոշումը կատարվեց, և գործարանը մեծապես շահեց դրանից:

Բարձրորակ արտադրանքի թողարկման ձգտումը կենսական պահանջ է դարձել ավտոգենցիների համար: Գազաեռակցման սարքերի № 4 և գազաբոցային սարքերի № 5 արտադրամասերի բաժանման կետում աչքի է զարնում «Որակը ձեռնարկության հայելին է» խոշորատառ կոչը, մյուսը հիշեցնում է՝



պայքարը արտադրանքի որակի համար յուրաքանչյուր բանվորի ու ինժեների պարտքն է, ապա՝ խիղճը ամենալավ վերահսկիչն է: Եվ այդպես շարունակ: Կուսկոմիտեի նախաձեռնությամբ գրված նմանօրինակ կոչերն արտադրության մարդկանց ամեն պահ հիշեցնում են, որ պետք է թողարկել միայն բարձրորակ սարքեր:

Հնգամյակի երկրորդ տարում գործարանում ծնվեց «Արտադրվող արտադրանքը հասցնել որակի պետական նշանի» նախաձեռնությունը: Դա մոբիլիզացնող նշանակություն ունեցավ: Մինչ այդ պետական որականիշ ունեցող մեկ սարքին գումարվեց երեքը: Կիրովականյան ավտոգենային սարքերը ցուցադրվեցին միջազգային տոնավաճառներին ու ցուցահանդեսներին: (1973-ին՝ Պրագայում, 1974-ին՝ Սոֆիայում, 1975-ին՝ Լայպցիգում), արժանացան արտասահմանյան մասնագետների բարձր գնահատականին՝ իրենց վրա սևեռելով օտարազգի պատվիրատուների ուշադրությունը:

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄՏՔԻՆ ՀԱՄԸՆԹԱՑ

Գլխավոր ինժեներ Լ. Խաչատրյանն ասում է.

— Մենք լավ գիտենք, որ արտադրանքի որակը պայմանավորված է ո՛չ միայն մարդու ընդունակությամբ, այլև կատարելագործված տեխնոլոգիայով: Մեր հիմնական նպատակն է՝ դետալների մշակման տաշեղահանման եղանակը փոխարինել դրանց ձևավորման տաք և սառը եղանակով: Դրա առավելությունն ակնհայտ է. աճում է արտադրողականությունը, խնայվում մետաղը, բարձրանում դետալների որակը, հուսալիությունն ու երկարակեցությունը:

Սա, հարկավ, տեխնիկական մտքի նվաճում է, որն արդեն լայնորեն կիրառվում է ավտոգենցիների մոտ: Նորամուծություններից մեկի հեղինակը դարձավ տեխնիկական վերահսկողության բաժնի պետ կոմունիստ Հայկազ Գրիգորյանը: Նրա առաջարկով փողրակային նիպելը (մետաղե միացուցիչ խողովակ) այժմ պատրաստվում է խողովակից՝ գլխիկի սառը նստեցմամբ և ատամների գլանմամբ: Մինչդեռ նախկինում այն պատրաստվում էր խառատային հաստոցի վրա, հոծ մետաղյա ձողից՝ մեխանիկական մշակմամբ:

Հնգամյակի տարիներին ավտոգենցիների լուրջ նվաճումներից մեկը գիտատեխնիկական առաջընթացի արագացման ապահովումն է: Արտադրության արդյունավետության բարձրացման այս վճռական գործոնը մշտապես եղել է կուսկազմակերպության ուշադրության կիզակետում, արտացոլվել սոցիալիստական պարտավորություններում: Կուսկոմիտեն իր նիստերում քննարկել է նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի ներդրմանը, հաստոցային պարկի օգտագործման գործակցի բարձրացմանը, մեքենայացմանն ու ավտոմատացմանը, ռացիոնալիզացիայի ու գյուտարարության ծավալմանը և գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը վերաբերող այլ հարցեր, հետևել, որպեսզի յուրացվեն արդի տեխնիկական մտքին համապատասխան ավտոգենային սարքեր, արտադրությունը կազմակերպվի գիտականորեն: Ամեն տարի սոցիալիստական պարտավորություններում ավելանում են արտադրանքի նոր տեսակների արտադրության յուրացմանը, նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի ներդրմանը վերաբերող կետեր: Հնգամյակի եզրափակիչ տարվա մրցությամբ, օրինակ, գործարանի կոլեկտիվը խոստացել է յուրացնել վեց տեսակ ավտոգենային սարքերի արտադրությունը, անցկացնել հոսքային գծեր, ներդնել տեխնոլոգիական առաջավոր եղանակներ:

Իններորդ հնգամյակի առաջին իսկ տարում գործարանում ստեղծվեց ավտոգենային մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտի երկու բաժին, որոնք մեծապես խթանեցին գիտատեխնիկական առաջընթացի արագացումը:

Կուսկոմիտեն 1974 թ. օգոստոսին իր նիստում քննարկեց նոր տեխնիկայի ներդրման վիճակը և անդրադարձավ գիտահետազոտական ինստիտուտի բաժինների գործունեությանը: Կուսկոմիտեն հանձնարարեց այդ բաժինների կուսկազմակերպությանը՝ ապահովել գործնական նախագծումների գրաֆիկը, հե-

տնել, որպեսզի նախագծումները կատարվեն ժամանակին, բարձր որակով և
անսխալ: Կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Ս. Թումանյան) պարբերա-
բար անդրադառնում է բաժինների ինժեներա-տեխնիկական աշխատողների
գործունեությանը, մշակում նրանց նախաձեռնությունը՝ զարգացնելու կոնկ-
րետ միջոցառումներ:
Գիտահետազոտական այս հիմնարկության կոլեկտիվը գիտության
Գիտահետազոտական այս հիմնարկության նորույթների հե-
շաղկապում է արտադրությանը, դառնում գիտատեխնիկական նորույթների հե-
ղինակ ու համահեղինակ: Մեծ ակտիվություն են դրսևորում հուսալիու-
թյան և տեխնոլոգիայի բաժիններում աշխատող կոմունիստներ Լ. Շարբաթյա-
նը, Ս. Վանյանը, Ա. Ազնավուրյանը, Ս. Թումանյանը, Ա. Ներկարարյանը, Գ.
Մարիկյանը: Կուսկոմիտեն և կուսկազմակերպությունները, գիտատեխնիկա-
կան առաջընթացի արագացման հարցերն ուսումնասիրելիս և այդ առնչու-
թյամբ մշակած միջոցառումներն իրականացնելիս, օգտագործում են նրանց
ուժերը:

***

Ավտոգենային սարքավորումների գործարանը, ինչպես տեսանք, իններորդ
հնգամյակի տարիներին քայլել է վերելքի ուղիով: Ավելի պայծառ ու խոստում-
նալից են հեռանկարները տասներորդ հնգամյակում: Ձեռնարկության գիրեկ-
տոր Հր. Ղամբարյանը, որ այստեղ է կատարել իր աշխատանքային գործունեու-
թյան առաջին քայլերը, այժմ անսքող հպարտությամբ պատմում է.
— Առաջիկա տարիներին մենք կյուրացնենք խողովակների ձևավոր
կտրման ավտոմատ կտրիչներ, մետաղների պլազմային ու թթվածնային կտրր-
ման մեքենաներ, գազերի փոխարինիչներով գործող կտրիչներ և արտադրանքի
ղանազան այլ տեսակներ: Տասից ավելի արտադրատեսակներ կներկայացնենք
որակի պետական նշանի: Արտադրական նոր գլխավոր մասնաշենքը կհագեց-
նենք ժամանակակից մեքենաներով, ծրագրային կառավարման և ագրեգատա-
յին հաստոցներով, կանցկացնենք հոսքային մեքենայացված գծեր, կմեքենա-
յացնենք ներկումը, տեղափոխումն ու փաթեթավորումը, փորձարկումը, արհես-
տավորումը, ձուլումն ու զոդումը, կկառուցենք արտադրական նոր, խոշոր մաս-
նաշենք: Նոր հնգամյակի վերջում ավտոգենային սարքերի թողարկման ծավա-
լը կմեծանա ավելի քան 12 միլիոն ռուբլով:
Ապագա հեռանկարների, անելիքների ու խնդիրների մասին է ոգևորված
պատմում ընկեր Ղամբարյանը, իսկ գործարանում աշխատանքային համերաշխ
կոլեկտիվն անդադրում ստեղծում է գալիք հնգամյակի հաջող կենսագործման
նախադրյալները:

# ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՕՐԻՆԱԿՈՎ

**Վ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Գորիսի «Ավանգարդ» սովխոզի կուսկազմակեր-
պության բյուրոյի քարտուղար

ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎՈՐԵՑՆՈՒՄ է, որ կուսկազմակերպություններն ուժեղ են իրենց անդամների բարձր կազմակերպվածությամբ և գիտակցականությամբ: «Մեր կուսակցության ուժը կոմունիստների գաղափարայնության, ակտիվության, անձնվիրության մեջ է: Այժմ կուսակցությունը ժողովրդին տանում է դեպի ստեղծարար մեծ խնդիրների լուծում: Նրա բարոյական հեղինակությունը նույնքան բարձր կլինի, որքան բարձր գաղափարական ու բարոյական հատկություններ ունենա յուրաքանչյուր կոմունիստ: ...Եթե դու կոմունիստ ես, քո պարտքն է չընկրկել դժվարությունների առջև, հավանություն չտալ հետամնաց տրամադրություններին, այլ լինել կուսակցության գիտակից և ակտիվ մարտիկը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 127, 128):

Կուսկազմակերպությունների, նրանց առջև ծառացած հսկայական խնդիրների լուծման գործում կոմունիստների դերի ու պատասխանատվության բարձրացման մասին հանգամանորեն խոսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թ. հունվարյան և հուլիսյան պլենումներում: Իր զեկուցման մեջ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը հուլիսյան պլենումում ասաց. «Յուրաքանչյուր կոմունիստ, որտեղ էլ նա աշխատելիս լինի և ինչպիսի պաշտոն էլ գրավի, պետք է անի իր կարողությունների առավելագույնը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումները կատարելու համար, մեծագույն պահանջկոտությամբ վերաբերվի ինքն իրեն, ինքնաքննադատաբար գնահատի սեփական աշխատանքի արդյունքները, իր բոլոր ուժերով օգնի առաջադրված խնդիրների իրականացմանը»:

Այս առումով կուսակցության XXIV համագումարից հետո Գորիսի «Ավանգարդ» սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը հասել է որոշակի հաջողությունների: Դրանք ձեռք բերեցինք շնորհիվ այն բանի, որ կուսակցականկազմակերպական ողջ գործունեությունը վերակառուցեցինք ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջների ոգով, կոմունիստների ուժերը ճիշտ ու նպատակային տեղաբաշխեցինք արտադրության վճռական տեղամասերում, բարձրացրինք նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի կատարման նկատմամբ: Եվ ահա, շնորհիվ կուսկազմակերպության գործունակության բարձրացման, մեր սովխոզն այժմ նորմալ հունով է ընթանում: Վերջին տարիներին նկատելիորեն բարելավվեց երկրագործության վարման կուլտուրան, բարձրացավ ցանքադաշտերի բերքատվությունը: Եթե 7—8 տարի առաջ ամեն մի հեկտարից ստացվում էր 9—11 ցենտներ հացահատիկ, ապա ընթացիկ հնգամյակի տարիներին միջին բերքատվությունը կազմեց 20 ցենտներ: Դա տնտեսությանը հնարավորություն ընձեռեց հացահատիկի արտադրության ու մթերումների հնգամյա առաջադրանքները համապատասխանաբար գերակատարել 5.340 և 5.400 ցենտներով: Հնգամյա պլանից ավելի ստացվել է նաև զգալի քանակությամբ բանջարեղեն:

Պայքարի առաջամարտիկները, հողագործներին ու մեխանիզատորներին
թև տվողը, ոգևորողը, ինչպես սպասվում էր, կոմունիստները եղան: Նրանցից
յուրաքանչյուրն իրեն պատասխանատու էր զգում ինչպես հանձնարարված
կոնկրետ գործի, այնպես էլ ընդհանուր որոշման կատարման համար: Կուսա-
կազմակերպության ներդրած ջանքերի շնորհիվ հնգամյակի տարիներին մելիո-
րատիվ աշխատանք կատարվեց 250 հեկտարի վրա, որից 80-ը ջրովի է: Նախ-
կինում խոպան, անմշակ ու քարակույտերով լի շատ դաշտամասեր վերածվել
են բերք ու բարիքի շտեմարանի: Կոմունիստ այգեգործներ Հր. Միրզոյանի, Ս.
Մկրտչյանի, Ս.. Գրիգորյանի և ուրիշների անձնվեր աշխատանքի շնորհիվ վեր-
ջին մի քանի տարում տնտեսության այգիներն ընդարձակվեցին 30 հեկտարով,
որոնց մի մասն այժմ բերքատու է:
Մեր կուսկազմակերպության 69 անդամներից 54-ն անմիջականորեն աշ-
խատում են արտադրության վճռական տեղամասերում, այդ թվում 31-ը՝ ա-
նասնապահության բնագավառում:
Սովխոզի համար անասնապահությունն առաջատար ճյուղ է: Դրա եկա-
մուտների մոտ 75 տոկոսն ստացվում է այդ ճյուղից: Մինչդեռ 7—8 տարի ա-
ռաջ վիճակն իրոք անբավարար էր: Դա լավ ըմբռնեցին կազմակերպության
անդամներ Էմմա և Մնացական Շալունցները, Սերյոժա և Դեզիկ Խաչատրը-
յանները, Սերգեյ, Հազարավարդ Գրիգորյանները, Վաղարշակ, Վազգեն, Անա-
հիտ Յոլյանները, Աշոտ Օհանյանը, Հրանտիկ Ներսիսյանը և ուրիշներ կամո-
վին մշտական աշխատանքի անցան կաթնապրանքային և ոչխարաբուծական
ֆերմաներում:
Կոմունիստ կթվոր-անասնապահներն իրենց անձնուրաց աշխատանքով
ավելի բորբոքեցին պայքարն անասնապահական մթերքների արտադրության
ավելացման համար: Նրանցից կթվորուհի Էմմա Շալունցը շրջանում առաջինը
հանդես եկավ «Յուրաքանչյուր կովից՝ 2.000 կիլոգրամ կաթ» հայրենասիրա-
կան նախաձեռնությամբ: Այն ջերմ արձագանք գտավ ինչպես մեր, այնպես էլ
մյուս տնտեսությունների կթվոր-անասնապահների շրջանում: Էմման հավա-
տարիմ մնաց իր խոստմանը և իր խնամքին հանձնված կովերի միջին կաթնա-
տվությունը հասցրեց 2.017 կիլոգրամի: Դա սովխոզի համար մեր պայմաննե-
րում յուրահատուկ ռեկորդ էր, որը բացեց ավելի բարձր բնագծեր նվաճելու
հեռանկարներ: Առաջավոր կթվորուհին իր փորձի մասին պատմեց շրջանային
«Զանգեզուր» թերթում, ֆերմայի աշխատողների արտադրական խորհրդակցու-
թյունում, կթվոր-անասնապահների շրջանային հավաքում, մի շարք տնտեսու-
թյուններում:
Ուշագրավ է, որ մեր տնտեսության 22 կթվոր-անասնապահներ հնգամյա-
կի բոլոր տարիներին յուրաքանչյուր կովից ստացել են 2.000 կիլոգրամից ոչ
պակաս կաթ: Նրանցից կոմունիստ Դեզիկ Բաղդագյուլյանը, որ ՍՍՀՄ Գերա-
գույն սովետի նախորդ գումարման դեպուտատ էր, 1974 թ. կովերի միջին
կաթնատվությունը հասցրեց 3.071 կիլոգրամի: Երբ նա բարձր բնագծեր նվա-
ճելու համար պայքարի դրոշ պարզեց, հետևողներ շատ եղան՝ կոմունիստներ
Անահիտ Յոլյանը, Հազարավարդ Գրիգորյանը, Վազգեն Յոլյանը, Սաշա Փարս-
յանը, անկուսակցականներ Նվարդ և Սաթենիկ Աբրահամյանները, Նինա Բալո-
յանը, Ֆլորա Մեսրոպյանը և ուրիշներ, որոնք ամեն մի կովից ստացան
2.500—2.820 կիլոգրամ կաթ: Իսկ տնտեսությունում կովերի միջին կաթնա-
տվությունն այդ տարի կազմեց 2.217 կիլոգրամ, որը սոցպարտավորությունը
գերազանցեց 367 կիլոգրամով:
Կաթի, մսի ու բրդի արտադրությունն ու մթերումների հնգամյա առաջա-
դրանքները տնտեսությունը կատարեց ժամկետից մի քանի ամիս շուտ, որա-
կական բարձր ցուցանիշներով: Ավելի կոնկրետ ասած, հոկտեմբերի մեկի
դրությամբ, արտադրվել ու պետությանն է հանձնվել համապատասխանաբար
3..907 և 3.432 տոննա կաթ, 715,6 և 690 տոննա միս, 55,3 և 65,3 տոննա
բուրդ: Մթերքների այդ քանակությունը մեծ չափով գերազանցում է հնգամյակի
բնագծերը: Տնտեսությունը կատարել է նաև անասունների գլխաքանակի ավե-
լացման հնգամյա պլանները:



Կթվոր-անասնապահներն ու հովիվները չեն հանգստանում ձեռք բերածով: Նրանք սոցմրցություն են ծավալել ի պատիվ ՍՄԿԿ XXV համագումարի և ստանձնել հանդիպական պլաններ, իրենց ողջ ջանքերն ուղղել դրանց անթերի կատարմանը: Այդ պայքարի առաջամարտիկները կրկին կոմունիստներն են:

Հետհամագումարյան անցած հինգ տարիներին ձեռք բերած մեր հաջողությունները արդյունք են նաև սոցմրցության արդյունավետ կազմակերպման:

Գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցմրցությանն ակտիվորեն մասնակցեցին նաև մեր սովխոզի մարդիկ և, ինչպես ասվեց վերևում, հասան լավ արդյունքների: Նրանց հայրենանվեր աշխատանքն աննկատ չմնաց. առաջավորներն արժանացան կառավարական շքանշանների ու մեդալների: Նրանց թվում էին կոմունիստներ Ս. Բակունցը, Դեզիկ Բաղդագյուլյանը, Ժ. Օրդյանը, Վ. Բոլունցը, Անահիտ Յոլյանը, Վ. Քարամյանը, Գոհարիկ Տոռոզյանը և ուրիշներ: Իսկ Էմմա Շալունցը պարգևատրվեց Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով: Նա մի շարք մեդալների ասպետ է, ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ:

Կոմունիստներն արտադրության առաջավորներ չեն սոսկ: Նրանք իրենց օրինակելիորեն են դրսևորում նաև հասարակական աշխատանքներում: Կրթվորուհի Դեզիկ Բաղդագյուլյանը, օրինակ, Գորիսի քաղաքային սովետի դեպուտատ է: Սեսիաներում նա հանդես է եկել հարազատ ոստանի բարեկարգմանը, կանաչապատմանը, այնտեղ սանիտարական պատշաճ մաքրության ապահովմանը վերաբերող շատ առաջարկներով, որոնք անհետևանք չեն մնացել: Տնտեսության երկարամյա դիրեկտոր, Լենինի շքանշանակիր, կոմունիստ Սուրեն Բակունցը Գորիսում շատ հարգված անձնավորություն է: Դրան հասել է հանրային արտադրության զարգացման գործում իր մուծած մեծ ավանդի և արտադրության մարդկանց նկատմամբ ցուցաբերած իր ուշադիր ու հարգալից վերաբերմունքի, նրանց մեջ լավն ու գեղեցիկը տեսնելու համար: Տնտեսությունում հիացմունքով են արտահայտվում կոմունիստներ Վազգեն և Անահիտ Յոլյանների ընտանիքի մասին: Նրանցից առաջինն աշխատում է որպես անասնապահ, երկրորդը՝ կթվորուհի: Արդեն մի քանի տարի է, ինչ երկուսն էլ արտադրության առաջավորներ են, մրցության դրոշակակիրներ: Նրանց օրինակը փոխանցվել է ընտանիքի կրտսեր անդամներին, որոնք, չափահաս դառնալով, գնացել են արտադրություն:

Այսպիսի օրինակները շատ են: Սակայն հարցը դրանց առատության մեջ չէ, այլ նրանում, որ կոմունիստները լավագույն օրինակ են ծառայում արտադրության մեջ, հասարակական աշխատանքներում և ընտանիքում:

Կուսկազմակերպությունը, ինչպես նաև կուսխմբերը իրենց տեսադաշտում են պահում բոլոր կոմունիստների ակտիվության բարձրացման հարցը, հաճախ նրանց տալիս զանազան հանձնարարություններ, որոնք նրանք կատարում են անթերի: Այսպես, գլխավոր զոոտեխնիկ Ջ. Ջիլֆուղարյանի և գլխավոր անասնաբույժ Մ. Փարսադանյանի անմիջական պատասխանատվությամբ կաթնապրանքային ֆերմայում կանոնավոր գործում է առաջավոր փորձի դպրոց:

Կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները՝ կուսկազմակերպությունը, սովխոզի դիրեկցիայի հետ սերտորեն համագործակցած, նախընթաց ժամանակաշրջանում ապահովեց հանրային արտադրության վերելքը, իններորդ հնգամյակի պլանների կատարումը բոլոր ցուցանիշներով և այժմ որոնում է հետագա առաջընթացի ուղիներ, կանխորոշում գալիք հնգամյակի անելիքները: Տարակույս չի կարող լինել, որ տասներորդ հնգամյակի առաջին իսկ տարում տնտեսությունը կհասնի ավելի բարձր արդյունքների: Ամեն ինչ արվում է Որոտանի ջրանցքի ջուրը արդյունավետ օգտագործելու համար: Տնտեսությունը, ըստ առանձին ճյուղերի, որոշել է տասներորդ հնգամյակի առաջին տարվա իր պայքարի բնագծերը: Ընդ որում, եկող տարի գյուղատնտեսական մթերքների արտադրության ու պետությանը դրանց հանձնման մակարդակը, 1975 թ. համեմատությամբ, կաճի 16—18 տոկոսով:

Մեր տնտեսությունը լավ գործերով ու մտահղացումներով է դիմավորում Հայաստանի կոմկուսի XXVI և ՍՄԿԿ XXV համագումարները:

# ՎԱՐՊԵՏԸ



Հեռվից վարպետ Հարությունը, փոքրահասակ, խաժակն ու շիկահեր այդ մարդը, նման է դիրիժորի: Հոսքային գծում քսանուր հաստոցներ համաչափ աղմկում են: Մուգ-կապտավուն արտահագուստներով քսանուր երիտասարդներ հակվել են հաստոցներին. անծանոթին կարող է թվալ, թե այսպես ամեն ինչ հարթ է ու ներդաշնակ: Բայց, ահա, արտադրական աղմկալի «երաժշտության» մեջ վարպետի ականջին հասնում են խորթ, օտարոտի հնչյուններ: Մինչև երիտասարդ բանվորը կկանչի նրան, Հարություն Կնյազյանն արդեն նրա մոտ է.

— Հը, ի՞նչ եղավ, «գործիքդ» լավ չէ՞ս յուղել...

Աշխույժ ու գործնական՝ նա միշտ շարժման մեջ է: Ներքին անհանգստությունն է թերևս պատճառը, որ տղաները կատակով ասում են. վարպետին երբեք տեղում չես գտնի... Իսկ դա նշանակում է՝ վարպետն ամենուր է, ուր իր կարիքն զգում են:

Այսպես ավարտվում է հերթափոխը, գալիս են տեղամասի մյուս տղաները, և կրկին վարպետ Հարությունը հայտնվում է մերթ մի մեքենայի մոտ, մերթ՝ մյուս... Եվ, երբ հոգնաբեկ ու գոհ դուրս է գալիս բակ ու ծաղկառատ ծառուղիներով քռնում ելքի ճամփան, մտորելու շատ բան է ունենում:

Մտքերն ավելի հաճախ պտտվում են տղաների, օրվա իր վաստակի, նաև հարազատ գործարանի շուրջ, որն արդեն տասներեք տարի դարձել է նրա երկրորդ տունը...

***

1958 թվականն էր: Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի մի խումբ շրջանավարտներ իջան Կիրովականի երկաթուղային կայարանում: Նրանց գործուղումներում նշված էր. Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարան: Տղաները շատերից հարցրին գործարանի հասցեն, եղան քաղաքի տարբեր հիմնարկություններ, բայց ոչ ոք մինչև իսկ չգիտեր ձեռնարկության գոյության մասին: Ի վերջո, կուսակցության քաղաքային կոմիտեում տեղեկացան, որ այն դեռևս գծագրվում է միայն: Նույնիսկ ցույց տվեցին ապագա ձեռնարկության տեղանքը. դժվար էր հավատալ, թե անհրապույր պահեստների, հողաշեն խարխուլ տնակների փլատակների վրա պետք է բարձրանար ճշգրիտ հաստոցների գործարանը: Սակայն նրանք երիտասարդ էին, ռոմանտիկ ու ոգեշունչ, լի հավատով ու եռանդով: Հեշտ չէր հիմնադիրների համար: Հատկապես հրատապ էր կադրերի խնդիրը: Ղեկավարները ճիշտ կողմնորոշվեցին. պատանիներին գործուղեցին պրոֆտեխնիկական ուսումնարաններ, երիտասարդներին՝ Միության համանման ձեռնարկություններ՝ մասնագիտանալու: Իսկ երբ թողարկվեց Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի մակնիշը կրող առաջին արտադրանքը, արբեցնող ուրախություն էր համակել ամենքին: Փոքրածավալ էր գայլիկոնահաման CT 55 հաստոցը:



Ահա այդ կազմավորման շրջանում էր, երբ գործարանի կոլեկտիվին անդամագրվեց Հարություն Կնյազյանը: Անդամագրվեց և այդ հավատամքին— բարեխղճություն, ճշգրտություն և, որ շատ կարևոր է, պատասխանատվություն ստանձնած գործի հանդեպ:

Հիրավի, գործարանը շատ է փոխվել: Այժմ տարեկան արտադրվում է 25 տեսակի հազարավոր հաստոց: Ստեղծվել են չափման ու ստուգման լաբորատորիա, փորձնական տեղամասեր, լայն սպառման առարկաների արտադրամաս:

Ձեռնարկության մարդիկ միմյանց լրացնելով ներկայացնում են իրենց գործարանի տարեգրությունը: Հպարտություն կա նրանց խոսքերում: Կատակ բան չէ. 50-ի փոխարեն այժմ կոլեկտիվն ընդգրկում է ավելի քան մեկուկես հազար բանվոր-ծառայողներ. իններորդ հնգամյակի եզրափակիչ տարվա երեք եռամսյակներին գործարանը գրավել է մրցանակային տեղեր. նրանց ձեռքում է ՀԿԿ Կիրովականի քաղկոմի և աշխատավորների դեպուտատների քաղսովետի փոխանցիկ կարմիր դրոշը, տասն անգամ անընդմեջ արժանացել է ՍՍՀՄ հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստրության առաջին մրցանակին:

Գործարանում աշխատանքային ժամ է: Հաստոցաշինարարները կտրում, դրոշմում, զոդում, հղկում են մետաղը, որն աստիճանաբար մշակվում, երեսպատվում և վերջնական տեսք է ստանում հավաքման արտադրամասերում: Ինձ՝ լրագրողիս համար, փոքր-ինչ արտասովոր է այս խանդավառ-ստեղծագործ մթնոլորտը, որ տիրում է ձեռնարկության բոլոր արտադրամասերում: Թվում է, թե հաստոցն արտադրեցիր, մոնտաժեցիր պատրաստի արտադրանքի պահեստն ու այլևս անելիք չունես: Բայց՝ ոչ: Այստեղ աշխատանքային ոճ է դարձել հանձնել միայն բարձրորակ արտադրատեսակ, որպեսզի հաստոցների տեխնիկական բնութագրերը համապատասխանեն համաշխարհային լավագույն նմուշների մակարդակին: Ահա, թե ինչու, «Որակի նշան» փորձնական հավաքման տեղամասի բանվորներն անհամբերությամբ են սպասում հանձնաժողովի որոշմանը. արդյոք քննություն կբռնե՞ն սեղանի խառատային 1602A և 16T02П մակնիշի հաստոցները: Պատասխանը շուշացավ: Եվ գործարանն այժմ այդ հաստոցներն արտադրում է միա՛յն որականիշով:

Ձեռնարկությունում կուսակցության XXV համագումարն արժանավայել դիմավորելու համար ծավալված սոցիալիստական մրցությունը լայն թափ է ստացել: Մրցությունը ո՛չ միայն միջարտադրամասային է, այլև անհատական:

№ 3 արտադրամասը, օրինակ, եռակի ոսկե մեդալակիր է, որին այն արժանացել է միութենական ու միջազգային բազմաթիվ ցուցահանդեսներում հաղթող ճանաչվելու շնորհիվ: Այստեղ «մեղքի» մեծ բաժին ունեն մասնավորապես 4531П և 4532 մակնիշի էլեկտրա-կայծային, ծրագրված գործողություններ կատարող, բալանսավորող հաստոցները:

Կիրովականի հաստոցներն առաքվում են ո՛չ միայն Միության տարբեր հանրապետություններ, այլև ՍՍՀՄ առևտրական մարմինների կողմից արտահանվում աշխարհի շուրջ 35 երկրներ՝ ԳԴՀ, ԳՖՀ, Լեհաստան, Ավստրիա, Չեխոսլովակիա, Նորվեգիա, Շվեդիա...

Այս ամենի մասին ինձ պատմեց գործարանի տեխնիկական № 9 արտադրամասի ավագ վարպետ Հարություն Կնյազյանը: Նրա հոսքային գըծում պատրաստում են խառատային և գայլիկոնային հաստոցների փոքրաչափ նուրբ մասեր: Միլիմետրի շեղումն իսկ այստեղ կարող է ձախողել գործը: Պատահական չէ, որ հոսքային գծի տղաներին համեմատում են ոսկերիչների հետ:

Իններորդ հնգամյակի այս տարվա բոլոր ինն ամիսների ընթացքում Հարություն Կնյազյանի տեղամասը սոցմրցությունում չորս անգամ մրցանակային տեղեր է գրավել և արժանացել դրամական պարգևների:

Մեր զրույցն ընդհատում է Աբրահամ Փանոյանը.

— Նայի՛ր, վարպետ, էս մասը ճի՞շտ եմ մշակել,— և երկարում է նրան 1603 ֆրեզերային հաստոցի խամուտ դետալի առաջին արտադրանքը: Ավագ վարպետը մանրազնին ստուգում է, չափում, համեմատում գծագրի հետ:

— Կեցցե՛ս, գերազանց է հղկված: Կարող ես սկսել մասսայական թողարկումը:

Զրույցս Հարությունի հետ ինչ-որ չի հաջողվում: Նա համառորեն շրջանցում է իր անձին վերաբերող իմ հարցերը, պատմում տղաների մասին:

— Ա՛յ, Աբրահամը օրական 200 դետալ է պատրաստում: Տիրապետում է մի քանի օպերացիաների: Արդեն ավարտել է իններորդ հնգամյակը: Այժմ ձեռնարկել է տասներորդ հնգամյակի իրագործմանը:

Վարպետը նույն ոգևորությամբ է պատմում մյուսների մասին: Եթե հարկ լինի, նա առանձին-առանձին կներկայացնի տեղամասի 44 բանվորներից յուրաքանչյուրին— մեծ մասամբ երիտասարդներ, գրեթե բոլորն էլ միջնակարգ մասնագիտական կրթությամբ: Ավագ վարպետի օրինակով նրանք օրըստօրե հարստացնում են իրենց պրոֆեսիոնալ գիտելիքները, յուրացնում ա—

ռաջավոր տեխնիկան և տեխնոլոգիան, արմատավորում նորանոր մեթոդներ: Նրանց բնորոշ է արտադրության գաղտնիքների խորիմացությունը: Կնյազյանը նշում է, որ տղաներից ոմանք՝ Վաչիկ Գրիգորյանը, Ռոբերտ Նազարյանը, Գագիկ Մադոյանը, Վոլոդյա Մադոյանը և ուրիշներ ուսման պակասը լրացնում են տեխնիկումներում և բաներիտ դպրոցներում: Լավ հիմքերի վրա է դրված ուսման ու հանգստի կազմակերպումը: Այս ամենով զբաղվում, դրանց վերահսկում է հոսքային գծի կարգավորիչ Սաշա Գոգինյանը, որը միաժամանակ գործարանի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարի առաջին տեղակալն է: Վարպետի խորհուրդով նա հաճախ է լինում դպրոցներում, հետաքրքրվում ընկերների առաջադիմությամբ, հաճախումներով. որևէ զանցանք հայտաբերելու դեպքում, համատեղ քննարկում են: Երբ պետք է հաշիվ տաս կոլեկտիվին առջև, դժվար թե դիմես դատապարտելի արարքի: Փոխօգնության այս յուրօրինակ մեթոդի հետևողական կիրառումը դրվատելի արդյունք է տվել: Եվ Հարությունը Կնյազյանն իրավունք ունի ասելու.

— Ես գոհ եմ իմ տղաներից:

Իսկ նրանք լավ գիտեն, թե վարպետը երբ է գոհ լինում:

Հարություն Կնյազյանն առաջին հերթին դաստիարակ է: Արտադրական պլաններից ոչ պակաս, նրան մտահոգում է երիտասարդ կադրերի պատրաստումը: Եվ այդ բնական է: Չէ՛ որ, երբ երիտասարդն օժտված է պատասխանատվության զգացումով, նա չի կարող հեռու կանգնել արտադրության առօրյայից, հոգսերից: Այդ դեպքում արդեն կարող ես չտարակուսել արտադրական ցուցանիշների համար: Սակայն, ինչպես ասում են, «ծանր է Մոնոմախի գլխարկը»: Տղաներից ամեն մեկը կարող է տասնյակ դեպքեր հիշել, որոնք վկայում են, թե վարպետն ինչպիսի ջանքերով է ի մի համախմբել տեղամասի բանվորներին:

Գործարանի կուսկազմակերպության քարտուղար Հայկասար Քառյանը պատմում է.

— Իբրև վարպետ-դաստիարակ, հմուտ կազմակերպիչ, Կնյազյանը ձեռնարկությունում հավասարը չունի: Կարծում եք պատահակա՞ն է, որ նրա մոտ մեծ մասամբ երիտասարդներ են: Շատ ծնողներ իրենք են գալիս խնդրելու, որ որդիներն աշխատեն անպայման հմուտ և հոգատար վարպետի ձեռքի տակ: Դա մեծ վստահության արտահայտություն է: Վերջերս մի տղա ընդունեցինք: Վատ շրջապատ էր ընկել, չէր սովորում, կռիվներ էր սարքում... Առանց երկմտանքի ուղարկեցինք Հարությունի տեղամասը: Սկզբում չէր մերվում. պարապուրդներ ուներ: Բայց կամաց-կամաց տեղի ունեցավ պատանու «Վերածնունդը». նա սկսեց հաճախել երեկոյան դպրոց, ժամանակին գալ աշխատանքի, մի խոսքով դարձավ առաջավորներից մեկը:

Խառատ Արշալույս Թունյանն ավելացնում է.

— Երբեմն գործն առանց վեճի չի լինում: Գործիքի, հում նյութի պակաս է եղել, դժգոհել եմ: Վարպետ Հարությունը համոզելու մեծ ունակություն ունի, ճարտար լեզու: Փնտրել է, սպառնացել, վերջը ճարել-բերել, միայն թե բանվորները պարապ չմնան: Պատահել է՝ գծագրից գլուխ չեմ հանել, խելքս չի հասել: Խնդրել եմ վարպետին, որ բացատրի: Ի՞նչ ասեմ, հոգի մարդ է, նեղ տեղին հասնող...

Լսում եմ Արշալույսին և ակամա վերհիշում հոսքային գծի տղաների խոսքերը՝ վարպետացել ենք վարպետ Հարությունի շնորհիվ: Իրոք, նրա նախկին սաներից շատերն այսօր հմուտ վարպետներ են, ինժեներներ...

Զուր չէ, որ այս տարի Հայաստանի արհեստակցական միությունների խորհուրդը Հարություն Կնյազյանին շնորհեց «Երիտասարդ վարպետ-դաստիարակ»-ի կոչում՝ երիտասարդ կադրերի պատրաստման գործում ունեցած ակտիվ մասնակցության համար:

* * *

Մասնագիտությամբ երկաթուղային է Հարություն Կնյազյանը: Ավարտել է Լենինականի երկաթուղային տրանսպորտի տեխնիկումը, ապա աշխատել Մասիս, Կիրովական և Փամբակ կայարաններում: Սակայն հորից ժառանգած մասնագիտությունը ներդաշնակ չէր տղայի ներքին հակումներին: Եվ երբ լսեց, որ նորաստեղծ գործարանը կադրերի սուր կարիք ունի, փոխադրվեց այնտեղ: Առաջին իսկ շաբաթներին դրսևորվեց Հարությունի կազմակերպչական բնատուր ձիրքը. ղեկավարությունն ըստ արժանվույն գնահատեց նրան: Լաբորատորիայի տեխնիկ, հսկիչ, վարպետի օգնական, մեխանիկական արտադրամասի վարպետ: Արդեն երեք տարի է, ինչ ավագ վարպետ է:

— Ճիշտ է ասում ժողովուրդը՝ տաշած քարը գետնին չի մնա,— ավագ վարպետի մասին է պատմում գործարանի դիրեկտոր Էդուարդ Գրիգորյանը:— Այդպես պատահեց և Կնյազյանի հետ: Նրա մտավոր ունակությունները, մասնագիտական հմտությունը, փորձն ու նվիրվածությունն այն հուսալի գրավականներն էին, որոնք գումարվելով կազմակերպչական անառարկելի տվյալներին, ապահովեցին Հարությունի տեղը կոլեկտիվում: Մի յուրահատկություն ևս: Ավագ վարպետը կարողանում է հասկանալ երիտասարդության «լեզուն», գրավել նրանց, սովորեցնել սիրել արտադրությունը: Եվ ոչ ոք չի միջամտում նրա «տնտեսության»՝ տեխնոլոգիական հոսքային գծի հոգսերին ու գործերին: Նա և՛ տեխնոլոգ է, և՛ վարպետ, և՛ վերահսկիչ:

Ավագ վարպետն աշխատում է առանց որակի վերահսկիչի. նրա հոսքային գծի թողարկած արտադրանքն անմիջապես պահեստ է ուղարկվում: Սա մեծ նվաճում է և արդյունք այն բանի, որ նա լավ գիտե՝ ինչ է նշանակում գործարանի համար ամեն դետալի միլիմետրի շեղումն իսկ: Չէ՛ որ ինքը ևս եղել 5-րդ կարգի վերահսկիչ, և գիտե՝ խոտան արտադրանքը նշանակում է ապարդյուն աշխատանք, թանկարժեք հումքի կորուստ: Ահա, այժմ այդ մասին է նա խորհրդածում.

— Արտադրությունը, ասես, կյանքի է կոչում մարդուն: Չէի կարող երկար ժամանակ հսկիչ մնալ: Ուզում էի անձամբ մասնակցել արտադրանքի թողարկմանը, սեփական ձեռքերով կոփել ու հարթել անմշակ մետաղը: Անկասկած արտադրությունն ավելի հետաքրքրական է: Ինքդ ես հղկում, փրեզերավորում այս կամ այն մասը, որոնում մշակման ավելի արդյունավետ մեթոդներ: Երբ կուզեք, մեր գործը նույնպես արվեստ է, ստեղծագործություն: Այն պահանջում է ո՛չ միայն ճշգրտություն, անսխալ հաշվարկ... Թե՛ պրոցեսը պետք է սահուն ընթանա, թե՛ արտադրանքը՝ արտաքուստ գրավիչ լինի: Այս հանգամանքը նպաստում է գործին սրտով կպչելու, ո՛չ միայն հաստոցի մոտ առաջին անգամ կանգնող պատանուն, այլև բազմամյա բանվորին: Սա նաև խթան է բարձր արդյունավետ աշխատանքի, որ մարդ այրվի գործի համար...

Այրվել գործի համար: Սրանք սոսկ բառեր չեն: Սրանք վարպետ Հարությունի աշխատանքային նշանաբանն են, նրա գործունեության հավատո հանգանակը: Ահա նա շտապ պատվեր է ստացել: Հարկավոր է սեղմ ժամկետում պատրաստել հաստոցի ամենակարևոր մասը՝ զսպախցուկը: Պլանային առաջադրանքի կատարման ժամկետին մնացել է հինգ օր: Հոսքային գծի բոլոր հաստոցները ծանրաբեռնված բանում են: Վարպետն անդուլ շարժման մեջ է: Մանրակրկիտ ստուգում է նոր մասերը, համեմատում գծագրի հետ: Ընդհանուր աղմուկի մեջ, ասես, խախտվում է հաստոցների ներդաշնակ ռիթմը: Նա անսխալ գիտե՝ խափանվել է հոսքային գծի ամենածայրի մեքենան: Շտապ մոտենում է Արշակին, պարզում պատճառը, կարգավորում, և մի քանի րոպե անց՝ կրկին սովորական ռիթմը: Տղաները հերթով են ընդմիջման գնում, որ քիչ ժամանակ վատնեն. խոստացել են ժամանակին հասցնել:

Ավարտվում է առաջին հերթափոխը: Վարպետը մնում է արտադրամասում, նա ոչինչ չի ասել տղաներին, սակայն նրանք ևս մնում են: Հոժարակամ, առանց որևէ խոսքի: Առաջադրանքը կատարված է: Կեցցե՛ն տղաները:

— Վստահ էինք, որ Հարությունը չէր ձախողի գործը,— ասում է № 9 արտադրամասի պետ Արշալույս Մեջլումյանը:— Հարությունի միշտ անհանգիստ, պրպտող միտքն ամեն անգամ նորովի է դրսևորվում: Նա բազմաթիվ նորարարական առաջարկությունների հեղինակ է: Եվ զարմանալի չէ, որ նրա հոսքային գծում երբեք վթար կամ խախտում չի եղել:

Ամեն ինչ ժամանակին և որակով: Սա չգրված օրենք է: «Մեկը բոլորի, բոլորը՝ մեկի համար»— կարմիր պաստառին գրված լոզունգ չէ այս, այլ կյանքով հաստատված ճշմարտություն: Իսկ այդ *մեկը*, հանգամանքների բերումով, որտեղ էլ լինի, գալիս խառնվում է *բոլորին*: Բոլորին, այսինքն՝ կոլեկտիվին: Արշակը, Սամվելը, Մարտունը, Մացակը և մյուսները մեկնեցին բանակ և վերադարձան իրենց տեղամասը: Հապա ինչպե՞ս... Սովորաբար աշակերտը կարգ է ստանում վեցամսյա աշխատանքից հետո, իսկ վարպետ Հարությունի մոտ այդ ժամկետը կրճատվելով հասել է երկու ամսվա:

— Վարպետը շատ է խստապահանջ: Նույնիսկ ծնող է կանչում, կարծես դպրոց լինի,— ժպիտով բողոքում են տղաները:

Մի տեսակ անհարմարությամբ ավագ վարպետը հարկ է համարում բացատրել.

— Ինչպե՞ս խիստ չլինել: 17—18 տարեկան են: Առավոտ կանուխ գալիս են առույգ, կարմրաթուշ և սկսում են ծխել: Ափսոսում ես: Ես նրանց ասում եմ՝ բա մեղք չեք, կարագ-մեղր ուտելու փոխարեն էդ թո՞ւյնն եք ներս քաշում: Ինքս ծխող չեմ և հասա այն բանին, որ տղաներից շատերն էլ չեն ծխում:

Թվում է, մանրուք է. «Տղաներիցս շատերն էլ չեն ծխում»: Բայց տեղամասում երկաթյա կարգապահություն կա՝ վարպետի ասածն անբեկանելի օրենք է: Ու թեև երբեմն տղաները տրտնջում են («ջահելությունից է, կվարժվեն»), սակայն ամեն ինչում ձգտում են նմանվել նրան, իսկ որոշ ժամանակ անց, ասես, գլուխ գովելով, հպարտությամբ հայտարարում՝ ես վարպետ Հարությունի սանն եմ:

Վարպետ Հարությունի խստապահանջությունն այնքան է շաղախված բարեհոգությամբ, որ այդ արտահայտությունը տեղամասի բանվորների համար նոր իմաստ է ստացել:

Բանվորներից մեկի համար շտապ հարկավոր էր առողջարանի ուղեգիր, իսկ եղածն արդեն բաժանել էին: Մերժողական բոլոր պատասխաններից հետո, թե վարպետն ինչպես ճարեց ուղեգիրը, միայն իրեն է հայտնի: Բայց՝ ճարեց:

Վարպետ Հարությունը եռանդով է կատարում և հասարակական հանձնարարությունները: Գործարկոմի նախագահի տեղակալ է նա: Գործարան ընդունվելու առաջին իսկ օրից նրա մասա-

ճոցությունններից մեկը ինքնագործ խմբերի ռւտեղծումն էր: Ի դեպ, Հարությունը երաժշտական կրթություն ունի, նվագում է կլառնետի, սաքսաֆոնի վրա. խորն են երաժշտասիրության արմատները: Այդ սերն էլ նրան մղեց ստեղծելու ժողգործիքների անսամբլ, փողային նվագախումբ: Հաստոցաշինարարների ինքնագործ խմբերը բազմիցս մասնակցել են հանրապետական մրցույթներին և միշտ էլ գրավել առաջնակարգ տեղեր: Վերջերս գործարանի ժողգործիքների անսամբլը նոր հաղթանակ տարավ Օդեսայի համանուն գործարանի հետ կազմակերպված մրրցույթում (ի դեպ, Կիրովականի և Օդեսայի եղբայր հաստոցների գործարաններն այս տարվանից սոցմրցության մեջ են): Եվ այդ գործում մեծ է վարպետ Հարությունի վաստակը:

— Հասարակական աշխատանքով զբաղվել եմ փոքրուց: Դեռ պատերազմի տարիներին Լենինականում կազմակերպում էինք «Պատանի թիմուրականների» ջոկատներ, օգնում պատերազմ մեկնածների ընտանիքներին, ծերերին ու հիվանդներին: Այն ժամանակ մեր մասին գրեցին «Բանվոր» թերթում, տպագրեցին մեր լուսանկարները: Հիմա հուզվում եմ, նայելով այդ խունացած վավերաթղթերին, ուրախանում, որ մենք ևս ձեռքներս ծալած չենք նստել, երբ հայրենիքը վտանգի մեջ էր: 14—15 տարեկան պատանիներ, մեզ տան տղամարդ էինք համարում և անում, ինչ կարող էինք: Հաղթանակից հետո ստացա «1941—1945 թթ. աշխատանքային արիության համար» մեդալ, ապա հոբելյանականով պարգևատրվեցի՝ ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի 30-ամյակի կապակցությամբ: Իմ ամենաթանկ պարգևներն եմ համարում դրանք:

Իսկ պարգևներ վարպետ Հարությունը շատ ունի: Պատվոգրեր, շնորհակալագրեր, տարբեր շքանշաններ... Կոմունիստական աշխատանքի հարվածային է նա, 1973, 1974 թվականներին սոցմրցության հաղթող, վերջերս արժանացավ ևս մեկ պարգևի՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի: Նրա ղեկավարած տեղամասը իններորդ հնգամյակի առաջադրանքները կատարել է 1975 թ. հուլիսին:

Այս տարի Հարություն Կնյազյանը ընտրվեց Կիրովականի քաղաքային սովետի դեպուտատ:

— Իմ ամենամեծ ցանկությունն է՝ օգտակար լինել համաքաղաքացիներիս: Շատ հոգսեր ունի մեր քաղաքը: Եվ, երբ կարողանամ գեթ փոքրինչ թեթևացնել դրանք, ուրեմն գտել եմ իմ տեղը կյանքում, ուրեմն զուր չեն իմ ապրած տարիները:

***

Երեկոն մեղմիկ ու անաղմուկ զգվում է գեղահիր քաղաքը, մթի նուրբ քղանցքները խնրճվում են շրջակա անտառներում ու մի վստահված անդորր է իջնում աշխարհի վրա: Հարությունը Կնյազյանը ներքին խաղաղությամբ է մտնում հարազատ հարկից ներս: Այդպիսի զգացողությամբ օրն ամփոփում են արդար աշխատության ու ազնիվ նկարագրի տեր մարդիկ: Նրան դիմավորում են ընտանիքի անդամները, կինը՝ Ռոզան, որ բազմամյա դեղագործուհի է, և զավակները... Սուսաննան արդեն ավարտել է ինստիտուտ և համալրել մանկավարժների շարքերը, Սարգիսն ու Սոնյան սովորում են բարձրագույն ուսումնական հաստատություններում, իսկ Գայանեն ավարտեց միջնակարգը, իսկ հետո՝ «ինչպես կկամենա»: Երբ ընտանեկան հարկի տակ ամեն ինչ խաղաղ է, միտքդ կարող է անկաշկանդ զբաղվել սիրած գործով, որ քո էությունն է, կյանքիդ իմաստը: Ու կարճատև հանգստից հետո վարպետ Հարությունը կրկին իր տարերքի մեջ է. 16403 հաստոցի դետալներից մեկի հղկման համար գծագրով առաջարկված տեխնոլոգիական մշակումը ինչ-որ շատ է ձգձգվում: Հարկ է մշակել նոր տեխնոլոգիա... Եվ լուսամփոփը երկար չի մարում նրա սենյակում:

Իսկ վա՞ղը: Վաղը սպասվում են նոր մաքառումներ՝ հանուն լավի, գեղեցկի, հաղթանակի:

ԱԻԴԱ ՀՈՎՆԱՆՅԱՆ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱՎԱՆԳԱՐԴԱՅԻՆ ԴԵՐԸ

**Հ. Ռ. ԱԼԻԽԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

*ՍՄԿԿ XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ մշակած տնտեսական և կուլտուրական շինարարության հոյակապ ծրագիրն իրականացնելու, իններորդ հնգամյակի պետական առաջադրանքները պատվով կատարելու գործում խիստ մեծ է սկզբնական կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների դերը: Ինչպես համագումարին տված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ նշեց Լ. Ի. Բրեժնևը, «Կուսակցության քաղաքականությունն իրականացնելու ասպարեզում կարևորագույն տեղերից մեկը գրավում են* սկզբնական կուսակցական կազմակերպությունները» *(*ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, *էջ 128): Սկզբնական կուսկազմակերպություններն անմիջական առնչվում են հանրային արտադրության կազմակերպմանը, ամեն օր ու ամեն ժամ շփվում աշխատանքային կոլեկտիվների հետ: Նրանց շարքերում են կոմունիստները դրսևորում իրենց ակտիվությունն ու նախաձեռնությունը, իրենց լավագույն հատկանիշները: Հետևաբար, ամեն մի սկզբնական կուսկազմակերպություն իր առջև ծառացած խնդիրները կարող է լուծել միայն այն դեպքում, երբ հետևողականորեն խորամուխ լինի արտադրության խնդիրների մեջ, մտահոգվի դրանց լուծմամբ, պատշաճ կերպով մոբիլիզացնի կոմունիստների ուժերը, ուղղություն տա նրանց ամենօրյա գործունեությանը, արտադրության մեջ ու հասարակական կյանքում ապահովի նրանց ավանգարդային դերը:*

*Այս տարի Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմկոմբինատի կուս-
կազմակերպությունը կնշի իր գոյավորման 45 տարին: Աշխատանքի ու պայ-
քարի փառահեղ ուղի է անցել լավ ավանդույթներով հարուստ այդ կազմա-
կերպությունը. ութ անդամ ունեցող նախկին կուսբջիջն աճել ու դարձել է ավե-
լի քան 600 մարդուց բաղկացած մի հզոր ջոկատ: Նրա անվան հետ են կապ-
ված ձեռնարկության բոլոր հաջողությունները:*

*Հավատարիմ իրենց լավագույն ավանդույթներին՝ քիմիագործ կոմու-
նիստների կոլեկտիվն այժմ էլ բարձրացնում է իր անդամների ակտիվությու-
նը, զարգացնում նրանց նախաձեռնությունը կոմբինատի առջև ծառացած
խնդիրների լուծման համար: Այդ պայքարի առաջին շարքերում են կոմու-
նիստներ, անվանի կարբիդագործ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, Լե-
նինի շքանշանակիր Ա. Թամրազյանը, բազմահաստոցավոր Յ. Շահինյանը,
Վ. Մկրտումյանը, որը շարքային բանվորից աճել ու դարձել է արտադրամասի
պետ, և ուրիշներ:*

*ԿՈՄՈՒՆԻՍՏ ԼԻՆԵԼԸ ՄԵԾ ՊԱՏԻՎ է, բայց մեծ են նաև նրա պարտակա-
նությունները: Այս առումով իրենց կոչման բարձրության վրա են Լենինականի
Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կուսկազմակեր-
պության անդամները: Այստեղ առանձին ուշադրություն է նվիրվում արտա-
դրության մեջ և հասարակական կյանքում կոմունիստների ավանգարդային
դերի ապահովմանը: Կուսակցության ավելի քան 450 անդամ-թեկնածուներ*

անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ, կատարում ու գերակատարում առաջադրանքները: Նրանք սիստեմատիկաբար բարձրացնում են իրենց որակավորումը: Շատերը ժամկետից մեկ տարի շուտ հաշիվները փակել են հնգամյակի հետ: Հնգամյակի անցած տարիներին 106 կոմունիստներ, սոցմրցման մեջ բարձր արդյունքներ ձեռք բերելու համար, պարգևատրվել են ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով, շատ-շատերը՝ «Սոցիալիստական մրցության հաղթողին» կրծքանշանով: Լայն ճանաչման են արժանացել արտադրության այնպիսի առաջավոր կոմունիստներ, ինչպիսիք են՝ սոցիալիստական աշխատանքի հերոս Գ. Տոնոյանը, Լենինի շքանշանակիր, ննթավարպետ Պ. Ստեփանյանը, նախամանող բանվորուհի Աստղիկ Առաքելյանը, ջուլհակուհի Նինա Հովհաննիսյանը և ուրիշներ:

Կուսկազմակերպության անդամ-թեկնածուներից շատերի կուսակցական հանձնարարությունները անմիջականորեն առնչվում են արտադրությանը, աշխատանքային գործունեությանը: Այժմ, հնգամյակի եզրափակիչ տարում, կոմունիստները քայլում են սոցմրցության առաջին շարքերում, նրանց զգալի մասը գյուտարարներ ու ռացիոնալիզատորներ են, նորի ու առաջավորի դրոշակակիրներ:

Հովոնի գյուղի կոլտնտեսությունն Ախուրյանի շրջանի փոքր տնտեսություններից է, սակայն գյուղատնտեսական մթերքների արտադրության ու վաճառքի ծավալով լուրջ մրցակից է դարձել ոչ միայն շրջանի, այլև հանրապետության խոշոր տնտեսությունների համար: Ցանքերի մշակության, պարարտացման ու ոռոգման աշխատանքները լավագույն ձևով կազմակերպելու շնորհիվ իններորդ հնգամյակում այստեղ հացահատիկի մեկ հեկտարի բերքատվությունը հասել է 45, շաքարի ճակնդեղինը՝ 420, բանջարեղենինը՝ 430 ցենտների կամ պլանից 1,5—2 անգամ ավելի: Կոլտնտեսությունում զարգացած է նաև անասնապահությունը: Արտադրական կոլեկտիվի ոգեշնչողը կուսկազմակերպությունն է: Նրա անդամներից շատերը շարքային աշխատողներ են դաշտավարության ու անասնապահության բնագավառներում և բոլորն էլ ապահովում են իրենց ավանգարդային դերը: Եվ եթե անասնապահական ֆերմաները բարձր եկամտաբեր են, ապա դա արդյունք է նաև այն բանի, որ ղեկավարներ՝ կոմունիստներ Գ. Տիկոյանը և Մ. Ղանդիլյանը իրենց գործը հասկացող ու սիրող մարդիկ են:

Արտադրության բնագավառը, ինչպես հայտնի է, հասարակական կյանքի վճռական տեղամասն է: Այժմ օրվա մեր նշանաբանն է՝ ՍՄԿԿ XXV համագումարը դիմավորել պլանների ու առաջադրանքների գերակատարմամբ, բարձր որակով: Բնական է, որ մեր առաջավոր կուսկազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրում այն բանին, որպեսզի առավել մեծ թվով կոմունիստներ անմիջականորեն գտնվեն նյութական արտադրության ոլորտում, պայքարի առաջին գծում: Հենց դրա շնորհիվ է, որ Անիի շրջանի գյուղատնտեսության աշխատողները, ինչպես հնգամյակի վճռական, այնպես էլ որոշիչ տարում, հաղթահարելով բնակլիմայական աննպաստ պայմանների հետևանքով ստեղծված դժվարությունները, աճեցրին ու հավաքեցին հացահատիկի բարձր բերք՝ լայն ճանաչման արժանանալով հանրապետությունում: Հեկտարի միջին բերքը շրջանի անջրդի հողերում կազմեց 25,8 ցենտներ, իսկ Ջորակապի աշխատավորները հեկտարից հավաքեցին 42,8 ցենտներ հացահատիկ: Շրջանի տնտեսությունները երկու տարում կատարեցին պետությանը հացահատիկի վաճառքի հնգամյա առաջադրանքը, իսկ մի շարք տնտեսություններ նվաճեցին նաև արտադրության հնգամյա բնագիծը: Այս ամենը զգալիորեն պայմանավորված է կուսակցական ուժերի՝ կոմունիստների ճիշտ տեղաբաշխմամբ, որը հնարավորություն է ընձեռում ուժեղացնել հսկողությունը յուրաքանչյուր օղակում: Ջիթհանքովի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության 54 անդամ-թեկնածուներից 36-ն աշխատում են դաշտավարության վճռական տեղամասերում: Նրանցից 11-ը մեխանիզատորներ են, բոլորն էլ արտադրության առաջավորներ:

Այս տարի նրանք խնայել են 5—6 տոկոս վառելանյութ և 10 տոկոս պա-



հեստամասեր: Կոմբայնավար-տրակտորիստներ Վ. Բարսեղյանը, Հ. Մկրտչյանը, Կ. Կոստանյանը, Գ. Հակոբյանը տարիներ շարունակ քայլում են մրցության ավանգարդում, աշխատանքի նկատմամբ դրսևորում գիտակցական, կոմունիստական վերաբերմունք: Վ. Բարսեղյանը, օրինակ, հնգամյակի եզրափակիչ տարում կատարել է 720, Հ. Մկրտչյանը՝ 680 հեկտար փափուկ վար: Նրանք իրենց հաշվին գրանցել են նաև 200-ական հեկտար հացահատիկի հունձ:

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԱՎԱՆԳԱՐԴԱՅԻՆ ԴԵՐԸ լայն հասկացություն է: Կուսակցությունն իր յուրաքանչյուր անդամի պարտքն է համարում՝ ո՛չ միայն պայքարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, լինել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, այլև կարողանալ կազմակերպել մարդկանց, օգնել նրանց՝ քայլելու մրցության ավանգարդում:

Հնգամյակի տնտեսական ու կուլտուրական շինարարության ծրագրի իրականացման համար պահանջվում է ամեն կերպ բարձրացնել կուսակցության բոլոր անդամ-թեկնածուների հասարակական ու արտադրական ակտիվությունը: Սակայն արտադրության նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքով չեն սպառվում այն պահանջները, որոնք ներկայացվում են կուսակցության անդամներին: Կյանքը հաստատում է, որ յուրաքանչյուր կոմունիստի անձնական օրինակը իրոք ներգործուն միջոց է շրջապատի համար:

Անցած տարի Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը հանդիսավորությամբ նշեց բանվոր-կոմունիստ Վարդան Գրիգորյանի աշխատանքային գործունեության 30-ամյակը: Տասնվեց տարեկան հասակում ավարտելով արհեստագործական ուսումնարանը՝ նա աշխատանքի է անցել այստեղ, նախ որպես փականագործ, ապա խառատ, ֆրեզերագործ, էլեկտրազոդող, կոմունիստական աշխատանքի բրիգադայի բրիգադավար: Այժմ էլ նա ձեռնարկության լավագույն, հեղինակավոր աշխատողներից է: Նրա ղեկավարած բրիգադան միշտ ընթանում է մրցության առջևից, գերակատարում պլանները: Այդ կոլեկտիվն առաջիններից մեկն է արժանացել կոմունիստականի բարձր կոչման: Վարդանին ճանաչում են որպես անվանի ռացիոնալիզատորի: Հնգամյակի վճռական տարվա պլանների հաջող կատարման համար նա պարգևատրվել է Լենինի շքանշանով: Նա միաժամանակ հասարակական ակտիվ աշխատող է. եղել է արտադրամասի կուսկազմակերպության քարտուղար, գործարանի կուսկոմիտեի անդամ, ընտրվել է Հայաստանի կոմկուսի XXIII և XXV համագումարների պատգամավոր, կուսշրջկոմի անդամ: Ներկայումս արտադրամասի կուսբյուրոյի անդամ է և պատվով է կատարում իր հանձնարարությունները:

Նման կոմունիստները մեր հանրապետությունում շատ-շատ են:

Սակայն, որքան էլ անցանկալի է, մեր շարքերում դեռևս կան առանձին կոմունիստներ, որոնք վատ են կատարում իրենց կանոնադրական պարտականությունները, արտադրության մեջ ու հասարակական կյանքում չեն ապահովում իրենց ավանգարդային դերը, չեն պահպանում կոմունիզմ կառուցողի բարոյական նորմերը, հաճախ խախտում են պետական ու կուսակցական կարգապահությունը, իսկ երբեմն էլ ձեռք մեկնում հանրային սեփականությանը: Հենց այդպիսի արարքների համար վերջին ժամանակներս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմ-շրջկոմները պատժել են ոչ քիչ թվով կոմունիստների, նաև ղեկավար աշխատողների:

«Մեզ հարկավոր են մարդիկ,— ասված է կուսակցության XXIV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետվության մեջ,— որոնք քաղաքական բարձր գիտակցությունը զուգորդում են պրոֆեսիոնալ լավ պատրաստության հետ, որոնք ընդունակ են գործիմացությամբ լուծելու էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հարցերը, որոնք տիրապետում են կառավարման ժամանակակից մեթոդներին» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 132): Համագու-

մարի այս պահանջները հավասարապես վերաբերում են բոլոր կոմունիստներին, որովհետև կուսակցությունն իր ուժը տեսնում է կոմունիստների գաղափարայնության, ակտիվության, անձնվիրության մեջ: Կուսակցության «...բարոյական հեղինակությունը նույնքան բարձր կլինի, որքան բարձր գաղափարական և բարոյական հատկություններ ունենա յուրաքանչյուր կոմունիստ» (նույն տեղը, էջ 127):

ՀԱՆՐԱՀԱՅՏ Է, ՈՐ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ պայմանավորված է գաղափարական համոզվածության, սկզբունքայնության, շիտակության, բարոյական անաղարտության աստիճանով: Իսկ դրանք ձևավորվում ու մշակվում են տևական աշխատանքի միջոցով: Ուրեմն այդ հատկությունների մշտական ու բազմակողմանի դաստիարակումը պետք է լինի յուրաքանչյուր կուսկազմակերպության ամենօրյա գործունեության գլխավոր խնդիրը:

Լենինական, Կիրովական քաղաքների, Ախուրյանի, Նոյեմբերյանի և այլ շրջանների կուսկազմակերպությունների փորձը մի անգամ ևս վկայում է, որ մշտական ու ժամանակավոր հանձնարարությունները նպաստում են կոմունիստների նկատմամբ պահանջկոտության բարձրացմանը, իսկ պահանջկոտությունը դաստիարակում է բարեխիղճ ու պատասխանատու վերաբերմունք գործի նկատմամբ:

Վերջին տարիներին, մասնավորապես կուսակցական փաստաթղթերի փոխանակման ժամանակաշրջանում, լայն տարածում գտավ կանոնադրական պարտականությունների կատարման, արտադրության մեջ իրենց ավանգարդային դերի և վստահված տեղամասի գործերի վիճակի վերաբերյալ կոմունիստների հաշվետվությունների ու ինֆորմացիաների քննարկումը կուսկազմակերպություններում: Պրակտիկան ցույց է տալիս, որ դա արդյունավետ միջոց է նրանց դաստիարակության ու գործունեության նկատմամբ կուսկազմակերպության վերահսկողության իրականացման, արտադրության մեջ նրանց ակտիվության ու նախաձեռնության զարգացման համար: Կիրովականի «Ավտոմատիկա» գործարանի կուսկազմակերպության ժողովներում և կուսկոմիտեի նիստերում պարբերաբար քննարկվում են այդպիսի հաշվետվություններ: Իրենց գործունեության մասին հաշիվ են տվել տեխնոլոգիական բաժնի աշխատողներ Լ. Դավթյանն ու Լ. Բլբուլյանը, հավաքման, դրոշմման, մամլման արտադրամասերի պետերը, առանձին քաղինֆորմատորներ, բազմաթիվ շարքային կոմունիստներ: Միմյանց նկատմամբ կոմունիստների պահանջկոտությունն ու քննադատական վերաբերմունքը միշտ էլ օգնել են կարճ ժամանակում վերացնելու եղած թերությունները, բարելավելու գործերի վիճակը, արտադրության մեջ մշտապես ապահովելու իրենց ավանգարդային դերը:

Չի կարելի չնկատել, որ շատ կուսկազմակերպություններում կոմունիստների դաստիարակության նպատակով իրականացվող բազմապիսի միջոցառումները՝ սեմինարները, անհատական ու խմբային զրույցները, հանդիպումները, որպես կանոն, անցկացվում են միայն երիտասարդ կոմունիստների հետ: Կուսակցության ծրագրի ու կանոնադրության ուսումնասիրությունը կազմակերպվում է երիտասարդ կոմունիստների կամ ՍՄԿԿ անդամության թեկնածուների համար, իսկ ավելի ստաժավոր կոմունիստները տարիներով չեն անդրադառնում այդ կարևոր փաստաթղթերին: Պատահական չէ, որ առանձին տեղերում նրանց մի մասը լավ չի ըմբռնում ՍՄԿԿ XXIII և XXIV համագումարների կողմից կանոնադրության մեջ կատարված փոփոխությունների ու լրացումների էությունը, որոնք ուղղված են կուսակցության անդամների դերի ու պատասխանատվության ըստ ամենայնի բարձրացմանը:

Իններորդ հնգամյակը մոտենում է ավարտին, կուսկազմակերպությունները, կոմունիստները հաշիվ են տալիս կուսակցության XXIV համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում իրենց հասումների մասին, իրենց գոհունակությունն արտահայտում Հայաստանի ժողտնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման առթիվ, սահմանում իրենց անելիքները ՍՄԿԿ XXV համագումարն արժանավայել դիմավորելու գործում:



# ԲԱՑԱՌԻԿ ՏԱՂԱՆԴԱՎՈՐ ՄԱՐԴԸ

Լրացավ պրոֆեսիոնալ հեղափոխականի, փայլուն հռետոր ու հրապարակախոս, ականավոր քննադատ, գրականագետ ու արվեստաբան, դրամատուրգ ու թարգմանիչ, քաղաքական ու պետական խոշոր գործիչ, սովետական կառավարության լուսավորության առաջին ժողովրդական կոմիսար, ակադեմիկոս Անատոլի Վասիլևիչ Լունաչարսկու ծննդյան 100-ամյակը: Պրոլետարական մեծ գրող Ա. Մ. Գորկին բնութագրել է նրան իբրև հոգեպես անսահման հարուստ մի մարդ, որն «...ընդունակ է խիստ առաջ մղելու ռուսական հեղափոխական միտքը»:



Բարդ ու դժվարին է եղել Ա. Վ. Լունաչարսկու կյանքի ուղին, մոլորություններ, սխալներ են եղել մարքսիստ-լենինյանի ձևավորման ընթացքում, բայց նրան բնորոշ հիմնականն ու կարևորը եղել են բոլորանվիրությունը բանվոր դասակարգի գործին, ճշմարտության անդուլ որոնումները, քննադատական վերաբերմունքը ո՛չ միայն այլոց, այլև, առաջին հերթին, իր նկատմամբ— շնորհալի, տաղանդավոր մարդկանց բնորոշ մի վեհ հատկություն, նրանց առաջընթացի մշտական աղբյուր, որը նրանց հար մղում է մարդկության պատմության առաջաբեմ:

Լունաչարսկին ծնվել է 1875 թ. նոյեմբերի
11-ին (23-ին) Պոլտավայում, ռադիկալ հա-
յացքների տեր աստիճանավորի ընտանիքում:
ժամանակի առաջավոր պարբերականները՝
«Отечественные записки», «Русская
мысль», Սալտիկով Շչեդրինի և այլ հեղափո-
խական դեմոկրատների ստեղծագործություննե-
րը ոգևորությամբ, բարձրաձայն կարդացող մոր
և հոգեհոր ազդեցությամբ Լունաչարսկին ման-
կուց իսկ դառնում է կրոնի և միապետության
կատաղի հակառակորդ: Գիմնազիայի IV դասա-
րանում արդեն նա գլխավորում էր «հեղափո-
խական ներտումներով համակված» սովորողնե-
րի խումբը, տասնհինգ տարեկանից սկսեց մեծ
եռանդով ուսումնասիրել մարքսիզմը, համարե-
լով իրեն մարքսիստ, տասնյոթ տարեկանից
պրոպագանդիստական աշխատանք է ծավալում
Կիևի երկաթուղային արհեստանոցների բանվորների և արհեստավորների շրջանում: 1892 թ. ընդունվում է սոցիալ-դեմոկրատական կազմակերպության շարքերը: Հրապուրվելով քաղաքականությամբ՝ նա սկսում է ավելի շատ կարդալ, հատկապես տարվում է փիլիսոփայական գրականությամբ:

Անատոլի Վասիլևիչն ավարտում է Կիևի գիմնազիան. քաղաքական անհուսալիության պատճառով ատեստատում նրա վարքը չորս էր գնահատված, որի հետևանքով և մայրաքաղաքային համալսարանների դռները փակ էին նրա համար: Լունաչարսկին մեկնում է Ցյուրիխ, ուր, փիլիսոփա-էմպիրիոկրիտիկ Ռ. Ավենարիուսի ղեկավարությամբ, երկու տարի ուսումնասիրում է բնագիտությունն ու փիլիսոփայությունը: «Շրջապատել էի ինձ փիլիսոփայության, պատմության, սոցիոլոգիայի վերաբերյալ գրքերով, և

ինքս ինձ համար ծրագիր չի կազմել, զուգակցելով բնական գիտությունների ֆակուլտետի փիլիսոփայական բաժինը, նրա նատուրալիստական բաժինը, իրավաբանական ֆակուլտետի և նույնիսկ Ցյուրիխի պոլիտեխնիկումի մի քանի լեկցիաները»,— գրում է Լունաչարսկին իր Հիշողություններում: Հետաքրքրասեր երիտասարդը լսում է նաև անատոմիայի, ֆիզիլիոգիայի, քաղաքատնտեսության, պատմության ու գրականության դասընթացները, շատ է կարդում, անհագորեն գիտելիքներ կուտակում:

Ցյուրիխում էլ հենց նա ծանոթացավ ու մտերմացավ Գ. Վ. Պլեխանովի, Պ. Բ. Աքսելրոդի և «Աշխատանքի ազատագրություն» խմբի այլ անդամների հետ: 1896 թ. Լունաչարսկին կարճ ժամանակով գալիս է Ռուսաստան, լինում Կիևում, Մոսկվայում, Պետերբուրգում և կրկին վերադառնում արտասահման, այս անգամ՝ Փարիզ, և գլխովին անձնատուր լինում Ֆրանսիայի քաղաքական կյանքին. նա ծանոթանում է Պոլ Լաֆարգի, նրա կնոջ՝ Լաուրա Մարքսի, Ժան Ժորեսի և սոցիալիստական շարժման այլ գործիչների հետ: Փարիզյան մեկ տարին հարստացնում է նրա քաղաքական փորձը. նա սեկընդմիշտ ընտրում է պրոֆեսիոնալ հեղափոխականի կյանքի ուղին:

Մինչ Լունաչարսկին արտասահմանում էր, վիթխարի փոփոխություններ էին տեղի ունեցել ռուսական հեղափոխական շարժման ասպարեզում: Սկսվել էր այդ շարժման լենինյան փուլը: Լենինի նախաձեռնությամբ Պետերբուրգում 1895 թ. կազմակերպվում է «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը»: Նույնպիսի միություններ են հիմնվում և այլ քաղաքներում, ինչպես և Մոսկվայում: Միաժամանակ ցարական կառավարությունը սաստկացնում էր այլախոհների ճնշումն ու հալածանքը: 1895 թ. ձերբակալվում, ապա (1897 թ.) Սիբիրի Շուշենսկոյե գյուղն է աքսորվում Վ. Ի. Լենինը. բանտարկվում և աքսորվում են նրա հիմնադրած ու ղեկավարած միության շատ անդամներ:

Այդպիսին էր իրադրությունը, երբ Լունաչարսկին եկավ Մոսկվա: Լենինի քրոջ՝ Ա. Ի. Ելիզարովայի և Մ. Ֆ. Վլադիմիրսկու հետ մեկտեղ նա ձեռնամուխ է լինում Մոսկվայի կոմիտեի վերականգնմանը, և աստիճանաբար գործերը հունի մեջ են մտնում: Լունաչարսկին գրում է կոչեր, թռուցիկներ, գործարաններում, ֆաբրիկաներում ծավալում ագիտացիոն և պրոպագանդիստական աշխատանք, հիմնում բանվորների հեղափոխական ինքնակրթության մի քանի խմբակներ: Սակայն Մոսկովյան կոմիտեն կրկին ձախորդության է մատնվում. Լունաչարսկին բանտարկվում է, ապա մեկնում Կիև՝ հարազատների մոտ, խոստանալով հեռու մնալ քաղաքականությունից: Սակայն այստեղ, Կարմիր խաչի ժողովում նա ռեֆերատ է կարդում, որի համար և հենց ժողովասրահից, ապագա տաղանդավոր պատմաբան Ե. Տառլեի և նարոդնիկ-հրապարակախոս Վ. Վոդովոզովի հետ կալանվում է: Երկու ամիս անց մոսկովյան պահնորդական բաժանմունքի հրամանագրով ութ ամսով նա բանտարկվում է Տագանկայի մենախցում, ապա աքսորվում Կալուգա, հետո, երեք տարով՝ Վոլոգոդսկի նահանգ:

Վոլոգդայից Լունաչարսկուն աքսորում են ավելի հեռու՝ Տոտմա, որտեղ նա գրում է իր առաջին գիրքը՝ Դրական գեղագիտության հիմունքները, ուր ավելի ակնբախ են հեղինակի իդեալիստական տատանումները: Այստեղ Լունաչարսկին ձգտում է «ստեղծագործական մարքսիզմի» հիման վրա լուծել գեղագիտական կարևորագույն հարցերը: «Ստեղծագործական մարքսիզմ» ասելով նա հասկանում էր մատերիալիստական գեղագիտության «հարստացում» Կանտի, Ֆիխտեի, Սպենսերի, Վունդի և, հատկապես, Մախի ու Ավենարիուսի փիլիսոփայական սկզբունքներով, մասնավորապես, այսպես կոչված՝ «կենսաբանական», «հոգեբանական-ֆիզիկական» հիմունքներով:

Ռուսական հեղափոխական դեմոկրատների գեղագիտությունից նրա հեռանալն առավել զգալի է 1904 թ. լույս տեսած Ավենարիուսի զուտ փորձի քննադատությունը Լունաչարսկու մասսայական շարադրանքով աշխատության մեջ: Պատմության մատերիալիստական ըմբռնումն այստեղ փոխարինվում է կենսաբանական բնույթի ինչ-որ վերացական կատեգորիայի վերաբերյալ դատողություններով: Բայց, ինչպես իրավամբ նշվեց, Լունաչարսկու հիշյալ աշխատություններն ուշագրավ էին ոչ փիլիսոփայական առումով. գրված լինելով 1905 թ. հեղափոխության նախօրեին, ընթերցողներին դրանք հետաքրքրում էին արծարծվող «Արվեստ և հեղափոխություն» հարցով, համակում հեղափոխական պաթոսով, դեկադենտության, հոռետեսության անողոք դատապարտմամբ:

Լունաչարսկի քննադատի ուժը դրսևորվում էր ռուս և համաշխարհային գրականության կոնկրետ ստեղծագործությունները գնահատելիս, օրինակ՝ Կորոլենկոյի, Մ. Մետեռլինկի մասին գրած հոդվածներում, Գեղագրի մասին ընդհանրապես և մի քանի գեղագիրների մասին մասնավորապես տեսության մեջ և այլուր: Դրանցում նա հաստատում էր կյանքի հեղափոխական վերափոխման անհրաժեշտությունը. հանձին պրոլետարիատի նա տեսնում էր մարդկությանը դեպի երջանիկ ապագան տանող ու-



ժը և, նկարագրելով այդ նոր գալիքը, կոչ էր անում ընթերցողին պայքարելու հանուն դրա:

1905 թ. մոտալուտ փոթորիկը, ծանոթությունն ու մտերմությունը հեղափոխության հանճարի՝ Վ. Ի. Լենինի հետ, առավել ամրապնդեցին այս միտումը Լունաչարսկու ստեղծագործության մեջ:

***

Լունաչարսկու և Վլադիմիր Իլյիչի առաջին հանդիպումը տեղի է ունեցել Փարիզում: Հիշելով այդ՝ Անատոլի Վասիլևիչը գրել է. «Փարիզի Սեն-Ժերմեն զբոսայգու մոտ գտնվող «Ոսկե առյուծ» հյուրանոցի իմ սենյակի դուռը ծեծեցին: Վեր կացա: Աստիճանների վրա մութ էր: Իմ առջև ես տեսա անծանոթ մի մարդու՝ կեպկայով, ոտքերի մոտ դրված ճամպրուկով:

Նայելով իմ հարցական արտահայտություն ունեցող դեմքին՝ մարդը պատասխանեց.

— Ես Լենինն եմ: Իսկ գնացքը շատ շուտ է եկել»:

Այդ օրը նրանք երկար զրուցեցին. Լենինը ծանոթացրեց Լունաչարսկուն տարագիրների՝ ժնևյան գաղութի գործերի վիճակին, օգնեց հասկանալու ՌՍԴԲԿ II համագումարում տեղի ունեցած պառակտման պատճառները, ներգրավեց նրան՝ աշխատակցելու բոլշևիկյան մամուլին: Այդ հանդիպման մասին Լունաչարսկին գրել է. «Ինձ համար դուրս գրեցի մենշևիկյան ու բոլշևիկյան ողջ գրականությունը և ջանացի խորապես ըմբռնել այն... Ի վերջո, իմ հետևից Փարիզ եկավ Վլադիմիր Իլյիչը և անձամբ հարկադրեց ինձ լիովին հրաժարվել իմ կասկածներից»:

Երրորդ համագումարն անհրաժեշտություն էր, և Լենինը եռանդուն նախապատրաստում էր այն. կազմակերպում էր բոլշևիկյան լրագրի հրատարակման գործը, հավաքագրում կուսակցությանը նվիրված մարդկանց: 1904 թ. դեկտեմբերի վերջից Ժնևում, Լենինի խմբագրությամբ, սկսեց լույս տեսնել «Вперёд» լրագիրը, որը վիթխարի դեր խաղաց կուսակցության վերականգնման համար ծավալված պայքարում և համագումարի նախապատրաստման գործում: Խորհելով, թե ում պետք է ընդգրկել թերթի խմբագրության կազմում, Լենինը Մ. Ի. Լիտվինովին գրել է. «Մեր ապագա ԿՕ-ի համար գրական խումբը նույնպես ամբողջովին նշված է (հինգ կամ վեց հոգի). Ռյադովոյը, Գալյորկան, ես, Շվարցը (Լունաչարսկին) զուցե և Բազարովը»:

Լենինի հրավերով Լունաչարսկին եկավ Ժնև և դարձավ «Вперёд»-ի խմբագրության աշխատանքների ակտիվ մասնակիցը: Այստեղ նա ծանոթացավ Մ. Օլմինսկու, Վ. Վորովսկու, Վ. Բոնչ-Բրուևիչի, Ն. Կ. Կրուպսկայայի և այլոց հետ: Առաջին իսկ հանդիպումից Անատոլի Վասիլևիչը մարտիկի տպավորություն է գործել Ն. Կ. Կրուպսկայայի վրա: «Ժնև եկավ մի ընկեր, որը կանգնեց Վլադիմիր Իլյիչի և բոլշևիկ-լենինյանների՝ այդ ժամանակ դեռևս փոքր խմբի կողքին և իր ողջ տաղանդը, բոլոր ուժերը նվիրեց հանուն մարքսիստական ճիշտ գծի, մենշևիզմի դեմ մղվող պայքարին»,— հիշում է նա:

Ժնևում Լունաչարսկին անցավ Վլադիմիր Իլյիչի դպրոցը— ո՛չ միայն կուսակցականության, բոլոր, նույնիսկ առաջին հայացքից մանր թվացող հարցերում սկզբունքայնության, այլև գրական վարպետության դպրոցը: Նա հրաժարվեց իր վաղ շրջանի հոդվածներին հատուկ վերամբարձ ոճից, որոշ վերացականությունից— պատմական տվյալ իրադրությունից բխող կոնկրետ խնդիրների անտեսումից: Խմբագրության աշխատակիցներին Լենինը հար հիշեցնում էր, որ նրանք գրում են մասսաների համար և պահանջում էր պարզ շարադրել մտքերը, հրաժարվել կեղծ գիտականությունից, չչարաշահել օտար բառերը:

Նադեժդա Կոնստանտինովնան պատմում է, թե ինչպես էր Իլյիչը գնահատում Լունաչարսկու՝ լրագրային նյութերի գրական ձևավորման վարպետությունը. «Ահա ինչ-որ մեկը կարտահայտի մի ճիշտ, հետաքրքրական միտք, Անատոլի Վասիլևիչն անմիջապես կվերցնի այն և այնպե՛ս գեղեցիկ, տաղանդով կձևավորի, որ նույնիսկ տվյալ մտքի հեղինակը կզարմանա՝ մի՞թե այդ իր՝ այնքան հասարակ, հաճախ անճոռնի միտքն էր, որ ստացավ այդքան գեղեցիկ, հրապուրիչ ձև: Մի քանի անգամ ես ներկա եմ եղել Վլադիմիր Իլյիչի և Անատոլի Վասիլևիչի զրույցներին և տեսել եմ, թե ինչպես են նրանք «լիցքավորում» իրար»:

«Вперёд»-ի, ավելի ուշ «Пролетарий»-ի խմբագրությունում աշխատելուն զուգընթաց Լունաչարսկին բազմաթիվ բանավեճերում հանդես էր գալիս զեկուցումներով, իբրև ռեֆերենտ պաշտպանում բոլշևիկյան հայացքներն ու դիրքորոշումը մենշևիկներից և Լենինի այլ թշնամիներից: «Իբրև հրապարակախոս,— հիշում է Լունաչարսկին,— ես առանձնապես բեղուն չէի... Սակայն իբրև բոլշևիզմի գաղափարների պրոպագանդիստ, իբրև մենշևիկների դեմ բանավոր բանավիճող, ես առաջինն էի Ժնևում և Շվեյցարիայի այլ քաղաքներում, ռուս տարագիրների գաղութներում, Ֆրանսիայում, Բելգիայում, Գերմանիայում: Անդադար շրջագայում էի, լինելով մեր, հաճախ ամենափոքրիկ, բայց միշտ եռանդուն բոլշևիկյան կազմակերպություններում: Ես ինձ չէի զրկում զուտ քաղաքական ռեֆերատների հետ մեկտեղ փիլիսոփայական, գրական և գեղարվեստական թեմաներով ռեֆերատներ կարդալու հաճույքից»:

1905 թվական: ՌՍԴԲԿ III համագումարում Լունաչարսկին ելույթ ունեցավ զինված ապստամբության մասին: Այդ առթիվ նա հիշում է. «Գիշերը, նիստի նախօրյակին... Վլադիմիր Իլյիչն ամենայն ուշադրությամբ կարդաց իմ ձեռագիրը և վերադարձրեց այն երկու-երեք աննշան ուղղումներով. զարմանալի չէր այդ, քանի որ իմ ճառում ես ղեկավարվել էի Վլադիմիր Իլյիչի ամենաճիշտ ու մանրակրկիտ ցուցումներով»:

Լունաչարսկին շարունակում է ակտիվ աշխատակցել «Пролетарий»-ին և մամուլի այլ օրգանների, հաճախ հանձնարարություններ ստանալով անձամբ Լենինից: Նա գրում է II ինտերնացիոնալի ներքին պայքարի մասին, մերկացնում մենշևիկների դավաճանական տակտիկան, պաշտպանում հեղափոխության մեջ պրոլետարիատի հեգեմոնիայի բոլշևիկյան գաղափարը և այլն:

Լունաչարսկին մեծ ուշադրություն է նվիրում նաև գեղագիտությանը, հանդես գալով գրականության, արվեստի հրատապ հարցերի վերաբերյալ մի շարք հոդվածներով: Դրանցից հիշարժան են հատկապես Երկխոսություն արվեստի մասին աշխատությունը, Մ. Գորկու Հովևների և Բարբարոսների մասին, և Սոցիալ-դեմոկրատական գեղարվեստական ստեղծագործության խնդիրները հոդվածները: Առաջինում Լունաչարսկին հերքում է իդեալիստական, ինչպես և վուլգար-սոցիոլոգիական հայացքները գեղարվեստական ստեղծագործության էության, հասարակական կյանքում գրականության և արվեստի նպատակի ու խնդիրների վերաբերյալ:

Գլխավոր հարվածը Լունաչարսկին ուղղում է «արվեստը արվեստի համար» տեսության, դեկադենտական հոռետեսության գաղափարախոսների դեմ, որոնք քարոզում էին հրաժարվել իրականությունից, կոչում մարդկանց «հեռանալ կյանքից», գտնում, որ ամեն ինչ քայքայվում, կործանվում է, անհատը անկում է ապրում: Լունաչարսկին դեմ է նաև դասակարգային մարտերի, դաժան տեխնիցիզմի դարում գրականությունը սին զվարճանք համարելուն, չի ընդունում գրականության «պարզունակ-նարոդնիկական» բացատումը: «Պլեբեյական վանդալիզմ և ուտիլիտարիզմ է այդ,— հայտարարում էր Լունաչարսկին Երկխոսության մասնակիցներից մեկի շուրթերով,— բոլորովին չգիտակցված, տարերային բողոքի պրիմիտիվ տեսակետ... Արվեստի մասին բույակային տեսակետ է այդ»: Լունաչարսկին քննադատում է նաև արվեստի «հասարակական կոչման», այսպես կոչված՝ «նարոդնիկական-ինտելիգենտական» կոնցեպցիան, որը, ըստ էության, գեղարվեստական ստեղծագործության վուլգար-սոցիոլոգիական գռեհկացում է:

Հակագիտական գեղագիտական այդ տեսություններին Լունաչարսկին հակադրում է մարքսիստական տեսակետը արվեստի վերաբերյալ— արվեստը կյանքի ճանաչման միջոց է, հզորագույն զենք կյանքի վերափոխման համար մղվող պայքարում:

Մարքսիստական գեղագիտության զարգացման հաջորդ քայլն է Լունաչարսկու Սոցիալ-դեմոկրատական գեղարվեստական ստեղծագործության խնդիրները հոդվածը: Հենվելով Վլադիմիր Իլյիչի Կուսակցական կազմակերպություն և կուսակցական գրականություն հոդվածի տեսական դրույթների և Մ. Գորկու գեղագիտական գործունեության վրա՝ իր հոդվածում Լունաչարսկին հիմնավորում է, որ կուսակցականությունը պրոլետարական, սոցիալ-դեմոկրատական արվեստի գլխավոր սկզբունքն է, կանխագուշակելով շատ դրույթներն այն տեսության, որը հետագայում գիտությունը պիտի կոչեր սոցիալիստական ռեալիզմի մեթոդ:

1906 թ. ապրիլին իբրև պատվիրակ նա մասնակցում է Ստոկհոլմում կայացած IV միավորիչ համագումարին, ապա Օլմինսկու և Վորովսկու հետ մեկտեղ ակտիվ մասնակցում բոլշևիկյան «Волна» լեգալ լրագրի աշխատանքներին, որի արգելումից հետո շարունակում է գործել Լենինի խմբագրությամբ հրատարակվող նոր լեգալ թերթի՝ «Вперёд»-ի և դրան հաջորդող «Эхо»-ի խմբագրությունում:

Այդ ժամանակամիջոցում Լունաչարսկու գրած գրական-քննադատական հոդվածներում ակներև են լենինյան մտքի առկայծումները: Հիշենք Սոցիալական հոգեբանություն և սոցիալական միստիկա հոդվածը, ուր նոր արվեստի խնդիրը համարվում է հերոս մարտիկների, ժողովրդական մասսաների կյանքի ճշմարտացի արտացոլումը: Հոդվածում անդրադառնալով Թշնամիներ և Բարբարոսներ պիեսներին՝ Գորկուն նա համարում է սոցիալական թեման արծարծող և սոցիալիստորեն այն մշակող առաջին ռուս գեղագիրը:

1907 թվական: Լունաչարսկին Լոնդոնում կայացած՝ ՌՍԴԲԿ V համագումարի պատգամավոր է, նույն թվականին, իբրև բոլշևիկների ներկայացուցիչ, նա մասնակցում է Ինտերնացիոնալի շտուտգարդյան կոնգրեսին: Ընտրվելով կուսակցությունների և արհմիությունների փոխհարաբերությունների վերաբերյալ բանաձև մշակող հանձնաժողովի անդամ՝ Լունաչարսկին հանդես է գալիս Պլեխանովի դիրքի դեմ. վերջինս պաշտպանում էր արհմիութենական կազմակերպությունների չեզոքության գաղափարը.

Սակայն Լունաչարսկու և Լենինի ճանապարհները շուտով բաժանվեցին: Երբ Ստոլիպինը ցրեց առաջին պետական դուման, և սկըսվեց ռեակցիայի նոր հարձակումը դեմոկրատիայի դեմ, Լունաչարսկին հարեց «օտզովիստներին» և «ուլտիմատիստներին»: Լենինյան քաղաքական գծից հեռանալուն հետևեց և նրա հեռացումը մարքսիզմի փիլիսոփայության կարևորագույն դրույթներից. Բոգդանովի հետ նա ըսկըսեց քարոզել «աստվածաշինարարություն»: Աստվածաշինարարությունն ընդունում էր և Գորկին՝ Բոգդանովին համարելով մեծ փիլիսոփա: Լենինը խիստ քննադատում է Լունաչարսկու շրջադարձը դեպի իդեալիզմը և նրա անցումը օտզովիզմի, հակակուսակցական դիրքերը:

Լունաչարսկու նահանջը մարքսիզմի փիլիսոփայությունից անդրադարձավ նրա գեղագիտական, գրական-քննադատական աշխատությունների վրա: Հատկապես այդ արտահայտվեց Գորկու Խոստովանությանը նվիրված հոդվածում, ուր Լունաչարսկին առաջադրում էր «հոգեբանական հետազոտության» խնդիրը և, ըստ էության, հրաժարումն ռեալ կյանքից վերցված կերպարներից: Լենինի կողմից խիստ քննադատված այդ ստեղծագործությունը՝ Խոստովանությունը, Լունաչարսկին ավելի բարձր գնահատեց, քան Մայրը, աստվածորոնող Մատվեյի բացահայտ կեղծ, մտացածին կերպարը համարելով գրողի հաջողությունը:

Բայց որքան էլ մեծ լիներ Բոգդանովի փիլիսոփայական-էսթետիկական հայացքների ազդեցությունը Լունաչարսկու վրա, այնուամենայնիվ նրա համար ապարդյուն չէր անցել «Վլադիմիր Իլյիչի դպրոցը»: Լենինի ազդեցությամբ, չնայած դանդաղ, Լունաչարսկին թոթափում էր մախիստական սխալների բեռը: 1913 թ. փետրվարի երկրորդ կեսին, Գորկուն ուղղված նամակում Լենինը գրել է. «Եթե Լունաչարսկին նույն ձևով անջատվեր Բոգդանովից գեղագիտության մարզում, ինչպես Ալեքսինսկին սկսեց անջատվել նրանից քաղաքականության մեջ... Եթե, գոնե...»:

Գեղագիտության մեջ այդ անջատումն զգալի դարձավ արդեն 1913—1916 թթ. գրված հոդվածներում, հատկապես «Борьба» ամսագրում հրապարակված նրա Նամակներ պրոլետարական գրականության մասին հոդվածում. հանդես գալով մենշևիկ Ա. Պոտրեսովի այն կարծիքի դեմ, թե նախասոցիալիստական հասարակարգում անհնար է ստեղծել պրոլետարական արվեստ, Լունաչարսկին փաստերով հաստատում է դրա գոյությունը և կանխագուշակում պայծառ ապագա:

Նույն միտքն է արտահայտված և Հակոբ Հակոբյանի հիմնադրած «Կարմիր մեխակներ» ամսագրին Լունաչարսկու ուղարկած Արվեստ արվեստի համար և արվեստ կյանքի համար հոդվածում, որն առաջին անգամ լույս տեսավ այդ ամսագրում, 1914 թ., հայերեն (այն ուկրաիներեն լույս տեսավ նաև «Дзвін» ամսագրում): Հետագայում Հակոբ Հակոբյանի «Նոր առավոտ» ստեղծագործությունների ժողովածուի համար գրած առաջաբանում Լունաչարսկին հիշում է. «Շատ վաղուց մենք ծանոթացել և մտերմացել ենք: Երկուսս էլ այն ժամանակ երիտասարդ էինք: Հանդիպել էինք մեր Հայրենիքից հեռու: Նա Թիֆլիսից էր, ես՝ Ուկրաինայից, Մոսկվայից, Լենինգրադից, բայց ավելի շատ մտերմացել էինք արտասահմանում: Հակոբ Հակոբյանն այդ ժամանակ հուսալի հեղափոխական կետ էր: Պետերբուրգում և տարեգրության մեջ նա շատ ծառայություններ էր մատուցել կուսակցական կենտրոններին ու խմբերին:

Բայց, քաղաքականից բացի, մեզ կապում էին և պոետական հետաքրքրությունները»:

Իր հոդվածում Լունաչարսկին հանդես է գալիս ո՛չ միայն «արվեստն արվեստի համար» սկզբունքի, այլև կյանքի արտացոլումը կանխորոշված գաղափարին ենթարկելու անմիտ տենդենցիոզության դեմ, քանի որ այդ դեպքում հասարակությունն «իր առջև տեսնում է ոչ ազատ, առանց հետին մտքի ստեղծագործող արտիստի, որի տաղանդը դրսևորվում է հարուստ, իր կողմից նրբամտորեն յուրացված ու ապրված նյութի նրբագեղ ու դյուրին ըմբռնմամբ. ո՛չ: Այժմ նա իր առջև տեսնում է «պարոն ուսուցչին», խորամանկ քարոզչին: Իսկական արվեստագետի համար արվեստը արհեստ չէ. իր սրտի ամենախորքից բխող երգ, միևնույն է այն կարտահայտվի հնչյունների, թե կերպարների միջոցով:

Իր ողջ էությունը նա ներդնում է իր արվեստի մեջ: Եվ, եթե նրա հոգին լիքն է, եթե նա ունի աստղեր, որոնցով նրա զգացմունքն ու կամքը կյանքի ծովում գտնում են իրենց ճանապարհը, ուրեմն արվեստը ևս անպայման կլինի գաղափարական, եթե կուզեք՝ միտումնավոր»: 1917 թ. Շվեյցարիայում Լունաչարսկին հանդիպում է Լենինին, առաջարկում նրան դաշինք կնքել. Իլյիչը համաձայնում է՝ մեծամասնության քաղաքական գծից չշեղվելու պայմանով:

Բռնկվեց փետրվարյան հեղափոխությունը, և Լենինի հետ մեկտեղ Լունաչարսկին վերադարձավ Ռուսաստան: Նա գլխովին նետվեց միտինգների, բանավեճերի, կուսակցության, քաղաքական սուր պայքարի հորձանուտը: Կոռնիլովյան խռովության օրերին Ձերժինսկու հետ միասին Լունաչարսկին աշխատում է Պետրո-

զիսոփայական աշխատությունների նշանակությունը սոցիալիստական կուլտուրայի համար:

Հետհոկտեմբերյան շրջանում ծաղկում է և Լունաչարսկու գրական-քննադատական և գեղարվեստական ստեղծագործությունը: Նա գրում է մի շարք հոդվածներ ռուս դասական գրականության մասին— Ռադիշչևից Չեխով և Կորոլենկո, հերքելով վուլգար-սոցիոլոգիական, կոմպարտիվիստական, ֆորմալիստական հակագիտական տեսությունները՝ իր հոդվածներում նա բացահայտում է ռուս դասականների ստեղծագործությունների իրական արժույթն ու նշանակությունը, նրանց անողոք ռեալիզմը, ժողովրդականությունը, վեհ գաղափարայնությունն ու գեղարվեստականությունը:

Հիանալի հոդվածաշար է նվիրում Լունաչարսկին սոցիալիստական ռեալիզմի հիմնադիր Ա. Մ. Գորկուն: Նա առաջինը գնահատեց Ֆուրմանովի Չապաևն ու Խռովությունը, բացահայտեց Մայակովսկու պոեզիայի նորարարական էությունը, Խաղաղ Դոնի ու Հերկած խոպանի և սովետական գրականության շատ այլ ստեղծագործությունների գեղարվեստական ու գաղափարական բարձր արժույթը:

Լունաչարսկու երկերի ամեննին ոչ լրիվ ժողովածուի ութ հատորներից հինգերորդ և վեցերորդ հատորներում զետեղված են արևմտաեվրոպական գրականությանը նվիրված նրա հոդվածները, զեկուցումները, առաջաբանները, գրախոսությունները: Դրանց մեծ մասը գրված է 1917 թ. հետո և զարմացնում է անունների բազմազանությամբ, ժամանակի ընդգրկումով— Վերածնության դարաշրջանից մինչև Ռոմեն Ռոլան, Հանրի Բարբյուս: Ուսումնասիրելով արտասահմանյան այնպիսի լավագույն գրողների ստեղծագործությունը, ինչպիսիք են՝ Բ. Շոուն, Վ. Ուէլսը, Հ. Հաուպտմանը և ուրիշներ, Լունաչարսկին բացահայտում էր նրանց աշխարհայացքի բարդությունն ու հակասականությունը, երևան հանում այն ամենը, ինչ արժեքավոր է նրանց ստեղծագործության մեջ, պայքարում կուլտուրայի այդ վարպետներին սոցիալիզմի աշխարհի կողմը գրավելու համար: Լունաչարսկու հիմնադրած ու ղեկավարած Պրոլետարական գրական կապերի միջազգային բյուրոն մեծ դեր է խաղացել արտասահմանյան առաջավոր մտավորականությանը սովետական ժողովրդին մոտեցնելու գործում և, պատահական չէ, որ Ռոմեն Ռոլանը Լունաչարսկուն անվանել է «սովետական մտքի ու արվեստի՝ ամենից հարգված դեսպանը» Արևմուտքում:

Լունաչարսկու գրական ժառանգության մեջ մեծ տեղ են գրավում ռուս և արևմտաեվրոպական դրամատուրգիային ու թատրոնին նվիրված աշխատությունները: 1958 թ. «Искусство» հրատարակչությունը լույս ընծայեց դրանց ժողովածուի ստվարածավալ երկհատորյակը:

Սովետական դրամատուրգիայի պիոներներից մեկն է Լունաչարսկին: 20—30-ական թթ. շատ թատրոններում հաջողությամբ բեմադրվել են նրա պիեսները՝ Ազատագրված Դոն Քիշոտը, Ֆոմա Կոմպանելան, Օլիվեր Կրոմվելը, Արջի հարսանիքը, Վարչապետն ու փականագործը, Թույնը և այլն: Ճիշտ է, Լունաչարսկու բոլոր պիեսները չէ, որ գեղարվեստական արժույթ ունեն, բայց դրանցից լավագույնները հերոսառոմանտիկական դրամայի նմուշներ են և ընդգրկում են պատմության որոշակի ժամանակաշրջան:

***

1929 թվականին Լունաչարսկին ազատվեց լուսավորության ժողկոմի պարտականությունից և նշանակվեց ՍՍՀՄ ԿԳԿ-ին կից գիտական խորհրդի նախագահ: Սովետական կառավարության հանձնարարությամբ դիվանագիտական գործերով նա հաճախ էր մեկնում արտասահման, զինաթափման վերաբերյալ սովետական առաջարկությամբ հանդես գալիս Ազգերի լիգայում: 1933 թ. օգոստոսին նա նշանակվում է Սովետական Միության առաջին լիազոր ներկայացուցիչը Իսպանիայում: Սակայն ճանապարհին նա ծանր հիվանդանում է և հարկադրված մնում Փարիզում: Նկարիչ Բ. Եֆիմովը, գրողներ Ե. Պետրովը, Մ. Կոլցովը, Ի. Էրենբուրգը, որ կյանքի այդ վերջին օրերին այցելում էին նրան, պատմում են, որ Լունաչարսկին լի էր նորանոր աշխատությունների մասին խոհերով, նա պատրաստվում էր ավարտել իր գիրքը՝ սատիրայի մասին. գրել Բեկոնի կենսագրությունը, գիրք Ֆաուստի մասին, ավարտել Գոգոլին նըվիրված էտյուդների շարքը և շատ այլ գործեր:

Լունաչարսկին վախճանվեց 1933 թ. դեկտեմբերի 26-ին: 1934 թ. հունվարի 2-ին հոծ բազմության ուղեկցությամբ նրա աճյունասափորն ամփոփվեց Կրեմլի պատի մեջ: Անատոլի Վասիլևիչի ողջ կյանքը քաղաքացիական ու ստեղծագործական մեծ սխրանք էր: «Կուսակցության մունետիկն ու երգիչն էր նա,— կարդում ենք «Известия» թերթի դեկտեմբերի 28-ի համարում,— նրա բոլորանվեր մարտիկը, իր սխալներն ու հափշտակությունները բազմիցս քավող կարգապահ զինվորը: Նա լիաբուռն սփռում էր այն առատ գանձերը, որոնցով այնպե՜ս շռայլորեն օժտել էր նրան բնությունը»:

# ԼԵԳԵՆԴ ԴԱՐՁԱԾ ԿՅԱՆՔ

1944 թ., Մոաբիտում, սովետական բազում հայրենասերների հետ մեկտեղ, ֆաշիստական դահիճները մահապատժի ենթարկեցին և 38-ամյա բանաստեղծ Մուսա Ջալիլին: Ծանր վիրավոր, նա գերվել էր ու նետվել համակենտրոնացման ճամբար, ուր, անասելի ծանր պայմաններում, շարունակում էր գրել, ստեղծագործել: Բելգիացի մի պարտիզանի միջոցով նրան հաջողվում է փրկել բանաստեղծությունների մի փոքրիկ նոթատետր. բանաստեղծություններ, որոնք հագեցած են բուռն հայրենասիրությամբ, ֆաշիզմի դեմ տանելիք հաղթանակի նկատմամբ տածած անսասան հավատով:

Իր և ընկերների սխրագործությունների հետ մեկտեղ, փրկված բանաստեղծությունների այդ գրքույկը ևս անմահություն բերեց կորովի մարտիկ-բանաստեղծին: Ջալիլի ստեղծագործությունները լույս են տեսել աշխարհի 50 լեզուներով: Հայրենասեր պոետին հետաքրքրությամբ կարդում են իտալացին ու ֆրանսիացին, գերմանացին և ուզբեկը, ռուսն ու չեխը, ուկրաինացին, հայն ու թաթարը...Նրա բանաստեղծությունները համարվում են սովետական գրականության խոշոր նվաճումներից մեկը:

Յոթանասուն տարեկան կլիներ այժմ Մուսա Ջալիլը, որ ծնվել է Օրենբուրգի նահանգի Մուստաֆա գյուղում: Նրա առաջին բանաստեղծությունները տպագրվել են Օրենբուրգի «Կըզըլ յուլդուզ» («Կարմիր աստղ») թերթում: Իր բանաստեղծությունները նա նվիրել է երիտասարդներին, կոմերիտմիությանը (**Անցած ուղիներ, Սյարվյար**), սովետական շարքային մարդուն (**«Օռլեց» գործարանում, Հարվածային պարտիզանը, Փոստատարը** և այլն):

Ամեն անգամ, վերընթերցնելով Ջալիլի ստեղծագործությունները, բացա-

հայտվում է նրա պոետական աշխարհի մի նոր կողմը: Պատահական չէ, որ
կրքոտ հայրենասերի պոեզիան ընթերցողները իրավամբ համարում են կյան-
քի փիլիսոփայություն, լուրջ խոհերի պոեզիա, որը ճառագում է հերոսություն
և անմահություն:

Մուսա Ջալիլի ստեղծագործության կարևոր թեմաներից մեկը ժողովրդի
անմահությունն ու հերոսականությունն է: Մարդու անմահությունն անշեղորեն
կապված է ժողովրդական մասսաների անմահության հետ: Այդ միտքն է ար-
տահայտում պոետն իր շատ բանաստեղծություններում, երգերում ու պոեմ-
ներում:

Անցնելով հազարամյակների տատասկոտ ուղիներով՝ մարդը ո՛չ միայն
պետք է օգտվի իր նախնիների՝ տարիների ընթացքում ստեղծած բարիքնե-
րից, այլև ինքը պետք է դառնա գեղեցկի արարիչ՝ խոր հետք թողնելով ա-
պագայի համար: Բանաստեղծի փիլիսոփայական հիմնական մտքերից է այդ,
որն արտահայտված է նրա շատ [illegible]ագործություններում, մասնավորապես
**Կաղնի** բանաստեղծության մեջ:

**Արժե ապրել, ավելի խոր,**
**Նկատելի հետք թողնելու այս հողում,**
**Որ գործը քո ապրի, մնա՝**
**Նման հազարամյա այս կաղնուն:**

Մարդու անմահության, նրա անպարտելի, վիթխարի ուժին են նվիրված
քնարական փիլիսոփայական այնպիսի բանաստեղծություններ, ինչպես՝ **Իմ
երգերը, Աղջկա երգը, Ազատություն, Կարմիր երիցուկը, Սուրը, Ծաղկի գե-
րեզմանը:** Այս ստեղծագործություններում, ձուլվելով գեղեցկի հետ, ընթերցո-
ղի առաջ հառնում են ազատ հայրենիքը, սովետական ժողովրդի վեհությունը:
Տոկուն մարտիկն ու հայրենասերը, որ պատրաստ է ամեն վայրկյան կանգնե-
լու սև սվաստիկայի դեմ պայքարող զինվորների շարքերում, իր **Հայրենի՛ք,
ների՛ր** բանաստեղծության մեջ գոչում է.

**Մեն-միակ հույս ունեմ ես միայն,**
**Ու սիրտս ձգտում է մի բանի.**
**Ընկերնե՛ր, տեղ տվեք դուք նրան՝**
**Ձեր շարքում ռազմադաշտ նա մեկնի:**

Այդպես,վայրկյան իսկ չմոռանալով հայրենիքը, նրա կորովի ժողովրդին,
Ջալիլը գրում էր հայրենասիրական բանաստեղծություններ, իր բոցաշունչ
խոսքով սասանելով ֆաշիստական կազեմատների քարակոփ պատերը:

Դեռևս Հայրենական մեծ պատերազմից առաջ, իր **Ալթինչեչ** և **Իլդար**
դրամատիկական պոեմներում դրսևորված ժողովրդական սխրանքի արտա-
հայտման գաղափարա-գեղագիտական սկզբունքն օգնեց Ջալիլին՝ կերտելու
հայրենասեր հերոսների լիրիկական կերպարը: Մուսա Ջալիլն իր բոլոր ստեղ-
ծագործություններում ձգտում է հասնել գաղափարի ու գեղարվեստականու-
թյան միասնության:

Ջալիլը հմտորեն պատռում է մարդկային կերպարանքը կորցրած իր դա-
հիճների դիմակը: Որքան էլ դժվար էր պայքարը հանուն արդարության, պոե-
տը չի կորցնում լավատեսության զգացումը: Դահճի սուր կացինն էր կախ-
ված նրա գլխին, իսկ նա ստեղծում էր իր սատիրական բանաստեղծություն-
ները, որոնք հարստացնում են թաթարական ու սովետական բազմազգ ժո-
ղովուրդների սատիրական-հումորիստական գրականության ոսկե ֆոնդը:



Կյանքի ճշմարտության հաղթանակը, ողբերգականի ու մահվան նկատ-
մամբ կատակերգության ու գեղեցկի հաղթանակը ցայտուն բացահայտված են
սատիրական այնպիսի բանաստեղծություններում, ինչպես՝ **Սիրահարվածը և
կովը, Զանգը, Խադիչա, Պաղած սերը, Դագաղը, Փայտոջիլը, Ժամացույցը** և
այլն: Լիովին իրավացի է թաթարական հայտնի քննադատ ու գրականագետ
Հազի Կաշաֆը՝ բանաստեղծի **Պոեզիայի գրադարանը** մատենաշարով լույս
տեսած ստեղծագործությունների նոր հրատարակության ներածականում
գրելով. «Այդպիսի մարգարիտներ կարող է ստեղծել միայն կյանքը ամենայն
խորությամբ հասկացող մեծ պոետը»:

Երգիծանքն օգնում է Մուսա Ջալիլին՝ մտովի վերադառնալու ազատու-
թյան գիրկը, ազատ կյանք: Նրա ստեղծագործությունն արժեքավոր է նաև
նրանով, որ բանաստեղծը ճիշտ է իմաստավորում գոյության էությունը, խո-
րապես հասկանում է հերոսների հոգեբանությունը, հետաքրքրական ձևով
լուծում մահվան և անմահության առեղծվածը: Բանաստեղծի գաղափարա-
կան իդեալի աղբյուրը բուն իսկ ժողովրդի հերոսական բնավորությունն է,
նրա հերոսական պայքարը մարդկությանը դարչնագույն ժանտախտից փըր-
կելու համար: Մուսա Ջալիլի հումորիստական բանաստեղծությունները դի-
պուկ են, հարուցում են ընթերցողի հոգեբուխ ծիծաղը, մղում՝ խորհելու կյան-
քի որոշ ծիծաղելի կողմերի մասին:

Ինչպիսի ծանր փորձությունների էլ ենթարկվել է Ջալիլը, մինչև կյանքի
վերջին վայրկյանը հավատարիմ է մնացել կոմունիստական ու գեղագիտա-
կան իր իդեալին: Կատարյալ բանաստեղծը չի կարող մշտապես իր մտքերը
ծածկել, նա պետք է ողջ ճշմարտությունն ասի մարդկանց երեսին: Պոետի
ջինջ երազները տոգորված են ինտերնացիոնալիզմի վեհ իդեալներով, անձ-
կում են գերմանական ժողովրդին տեսնել ազատ, մեկընդմիշտ թոթափած
հիտլերիզմի լուծը: Նա հավատում է գերմանական ժողովրդի ուժին, ներքուստ
զգալով նացիզմի փլուզումը:

Հայրենական պատերազմի տարիներին գրած նրա բանաստեղծություն-
ներում առավել ցայտուն են արտահայտված ռազմիկ բանաստեղծի՝ սոցիա-
լիստական հայրենիքի նկատմամբ տածած ջերմ սերը, սովետական մարդու
անսասան կորովը **(Հարձակումից առաջ, Սաղավարտ, Ծամբարում, Մի՛ հա-
վատա** և այլն): Հաղթանակի, գեղեցկի նկատմամբ տածած հավատն օգնել է
նրան՝ գրական ստեղծագործության նկատմամբ նոր վերաբերմունք դրսևորե-
լու: Զարգացնելով թաթարական բանաստեղծության հաստատված, ավան-
դական ձևը, դրան նա տալիս է նոր երանգ: Շարունակելով Գ. Տուկայի,
Մ. Գաֆուրի, Խ. Տակտաշի մշակած փիլիսոփայական տենդենցները, Մուսա
Ջալիլը հիմնադրեց փիլիսոփայական քնարերգությունը թաթարական սովե-
տական չափածո գրականության մեջ:

Բանաստեղծի փիլիսոփայական խոր մտորումները նոր, պայծառ էջ բա-
ցեցին սովետական պոեզիայում, որն օգնում է ընթերցողին՝ ավելի լավ թա-
փանցելու արդիականության խորքերը:

Հերոսական պոեզիան պարգևեց բանաստեղծին նոր կյանք-անմահու-
թյուն: Նրա բանաստեղծությունների ամեն մի տողը դարձել է հերոսության
ու տոկունության խորհրդանիշ: Դրանք միշտ կթևածեն մարդկանց մտքերում,
գործերում ու իդեալներում:

Ս. Գ. ՄԱՀՄՈՒԴՈՎ
Կազան

ինչպես և *Կրեյցերյան սոնատի* շատ հատվածներ անգիր գիտե, ապա Պեշիկթաշլյանի այդ սահուն ու զողտրիկ ոտանավորներն անգիր իմանալը նրա համար հասարակ բան է:

...Լուսաբաժնի դահլիճում Լենինականի գրողների կազմակերպությունը դասախոսություն էր կազմակերպել, որտեղ «Պլեխանովը որպես գեղագետ և տեսաբան» թեմայով զեկուցեց Նորայր Դաբաղյանը: Ելույթ ունեցան Տիգրան Խորունին, Արփիար Մկրտչյանը, Լեմվել Մարությանը և ուրիշներ: Կարախանյանը այդ դասախոսությանը չէր մասնակցել: Մյուս օրը բանֆակի ուսանողները նրան պատմում են դասախոսության մասին:

Կարախանյանը դժգոհ էր, որ Ն. Դաբաղյանը նսեմացրել էր Պլեխանովի գեղագիտական ժառանգությունը:

Գրողներից Կարախանյանի սիրելիներն էին Շեքսպիրը, Լև Տոլստոյը և Րաֆֆին: Նա գիտեր նշանավոր փիլիսոփաներին՝ Արիստոտելին ու Պլատոնին, Կանտին ու Հեգելին, Մարքսին ու Էնգելսին: Լավ գիտեր նաև բնական գիտությունները:

Փորձառու հրապարակախոս էր Կարախանյանը ու լավ լրագրող: Պարսկական կյանքից նա մի քանի գիտական, ազգագրական նյութեր է հրապարակել «Մուրճ» ամսագրում և ապա հետագայում ուսանելի հոդվածներով հանդես եկել Բաքվի «Բանվոր», «Սոցիալ-դեմոկրատ» թերթերում: Ստեփան Շահումյանի հանձնարարությամբ նա խմբագրում է Բաքվի սովետի տպագիր օրգան «Տեղեկատու» պարբերաթերթը և այլն:

Հովսեփ Կարախանյանը միաժամանակ հասարակական ակտիվ գործիչ էր, եռանդուն պրոպագանդիստ և օրինակելի քաղաքացի: Այդ տարիներին կուսակցության ու կառավարության կողմից անցկացված մի կամպանիա չկար, որի մասսայականացմանը և կենսագործմանը նա չմասնակցեր: Բանֆակի ուսանողներից մի քանիսը զուր չէին կատակով ասում, թե Կարախանյանը գավկոմի և գավգործկոմի գաղափարական ճակատի «ծանր հրետանին» է:

Համեստ էր: Աշխատանքից հետո, երբ մի քիչ խաղաղվում էր լուսբաժնի գրասենյակը, նա դուրս էր գալիս առանձնասենյակից, նստում բաժնի քարտուղար Սուքիաս Մխիթարյանի կողքին ու պատմում օրվա ուրախ ու տխուր դեպքերի մասին, պատմում էր ու բարձր ծիծաղում: Տխրում, ծանր ապրումներ էր ունենում, երբ զեկուցում էին, թե այսինչ ուսուցիչը վատ է աշխատում, կամ գյուղխորհուրդը բնակարանով ու վառելիքով չի ապահովել մանկավարժներին, ուշացրել են աշխատավարձը և այլն:

Գործի մեջ խստապահանջ, անզիջում էր Կարախանյանը. նրա համար մշակույթն ու լուսավորությունը նվիրական սրբություններ էին: Լայնախոհ էր և մեծահոգի. որքան խիստ էր, նույնքան էլ՝ բարի:

...Հովսեփ Կարախանյանը ծնվել է Իրանի Ղարադաղ գավառի Վեղան գյուղում՝ 1878 թվականին: Շուտով նրա ծնողները Ղարադաղից տեղափոխվում են Թավրիզ: Հայրը գրագետ, զարգացած մարդ էր, ծառայել էր Թավրիզում գործող եվրոպական մի ընկերության գրասենյակում՝ որպես գրագիր: Հովսեփի մանկությունն ու պատանեկությունն անցնում են Թավրիզում: 1891 թ. ավարտում է տեղի դպրոցը և ընդունվում Էջմիածնի Գևորգյան ճեմարանը, ուր սովորում է մինչև 1897 թվականը, ապա ուսանում է Լազարյան ճեմարանում, որից հետո գալիս է Թավրիզ, աշխատում որպես ուսուցիչ: Լազարյան ճեմարանում սովորելիս՝ նա շփվում է ռուս հեղափոխական գործիչների հետ: Ծանոթանում և ուսումնասիրում նարոդնիկական շարժումը և մարքսիզմը, դառնում մարքսիզմի հետևորդն ու պրոպագանդիստը:

Հետագայում, Թավրիզում պաշտոնավարելիս, երիտասարդ Կարախանյանն աշակերտության շրջանում տարածում է մարքսիզմի գաղափարները: Նա մարքսիզմի կլասիկներից շատ բան էր կարդացել և յուրացրել, սակայն նրա վրա ամենազորեղ ազդեցությունն էին թողել Լենինի հոդվածները, որոնք լույս էին տեսել «Իսկրա», «Վպերյոդ» և «Պրոլետարի» թերթերում: Թե որքան մեծ էր Լենինի ազդեցությունը Կարախանյանի վրա և թե գաղափարապես որքան էր կապված նրա հայացքներին, երևում է նրա մի նամակից, որը Թավրիզից 1906 թ. ուղարկել է Ժնևում գտնվող իր ընկերներին. «Թանկագին ընկերնե՛ր, խնդրում եմ չզլանաք մի քանի տեղեկություն գրելու ինձ Լենինի մասին: Որտե՞ղ է նա, ի՞նչ է անում, չի՞ ձերբակալվել արդյոք. իմ ստացած հայկական և ռուսական թերթերը մի համառ լռություն են պահպանում այդ մասին: Ես Լենինին ծանոթ չեմ, բայց նրա անձնավորությունը շատ սիրելի է ինձ, նրա ուժեղ անհատականությունը, ուժեղ և կորովի միտքը, որը ցայտում է նրա գրվածքների յուրաքանչյուր տողից, նրա անսահման անձնվիրությունը իր դավանած գաղափարներին— այս բոլորը դարձրել են նրան իմ աչքում նախկին դարերի մի դյուցազն, և Լենինի անունը աշակերտ եղածս ժամանակից, պաշտած կուռքերիս՝ Բելինսկու, Պիսարևի, Դոբրոլյուբովի անունների հետ ես խորին պատկառանքով է, որ արտասանում եմ յուրաքանչյուր անգամ...» («Սովետական Հայաստան», 1968 թ., 30 հունիսի): Ահա այդ սերն էր, որ Կարախանյանին 1910 թ. դարձրեց Լենինի կուսակցության անդամ:



Կարախանյանը Թեհրանից գնում է Պետերբուրգ և սովորում համալսարանի իրավաբանական ֆակուլտետում, ապա կուսակցական աշխատանքի մեկնում Բաքու, ուր մնում է մինչև 1918 թվականը: Այստեղ նա Ստ. Շահումյանի, Ս. Կասյանի և Ա. Կարինյանի հետ աշխատակցում է հայկական մարքսիստական լեգալ և անլեգալ մամուլին: Գրում է քաղաքական, կրթա-լուսավորչական և գրականագիտական բնույթի արժեքավոր հոդվածներ, որոնք մեծ դեր են խաղացել Բաքվի պրոլետարիատին կազմակերպելու գործում:

Անսպառ էր Հ. Կարախանյանի եռանդը: Նա պրոպագանդիստական լայն գործունեություն է ծավալել Բաքվի պրոլետարիատի շրջանում: Բաքվի կոմունայի օրերին, Ստ. Շահումյանի հանձնարարությամբ, նա մեկնեց գավառները, ուր, գործնական հեղափոխական աշխատանք ծավալելուն զուգընթաց, թղթակցում էր «Բանվոր», «Սոցիալ-դեմոկրատ» բոլշևիկյան լրագրերին: Նա միաժամանակ վարում էր Բաքվի նահանգի Գյոկչա գավառի կոմիսարի պաշտոնը:

1918 թ. Շահումյանի ջանքերով հաջողվում է Իրանի կառավարության հետ համաձայնության գալ և այնտեղ սովետական դիվանագիտական միսիա հաստատել, որտեղ Հ. Կարախանյանը նշանակվում է որպես միսիայի քարտուղար և ավագ խորհրդական՝ դեսպան Կոլոմիյցևի գլխավորությամբ: 1918 թ. հուլիսին Հ. Կարախանյանը իր կնոջ՝ Սաթենիկի, և չորս երեխաների հետ մեկնում է Թեհրան: Սակայն, մի քանի ամիս հետո, նոյեմբերի 3-ի գիշերը, անգլիացիների դրդմամբ տեղի ռեակցիոն ուժերը հարձակվում են դեսպանատան վրա, ձերբակալում անձնակազմը, ծեծում, ծաղր ու ծանակի ենթարկում սովետական քաղաքացիներին և նրանց ընտանիքի անդամներին:

Բանտարկված քաղաքացիներին միառժամանակ Թեհրանում պահելուց հետո, անգլիացիները տանում են Բաղդադ, ապա՝ Հնդկաստան: Զրկանքի, անարգանքի ու վշտի հետևանքով աքսորի ճանապարհին վախճանվում է Կարախանյանի կինը: Չորս երեխայի խնամքը ընկնում է հոր վրա: Սարսափելի ծանր օրեր է ապրել Կարախանյանը— խուզարկություն, բանտարկություն, ծեծ և անարգանք, նվաստացում: Երեք տարի գերության ու թշվառության մեջ տառապելուց հետո, 1921 թ., սովետական կառավարության պահանջով, ռազմագերիների փոխանակման միջոցով Հ. Կարախանյանն իր ընտանիքով վերադառնում է Մոսկվա:

1922 թ. Կարախանյանն աշխատում է Ուկրաինայում, որպես Խորհրդային Հայաստանի լիազոր-ներկայացուցիչ: 1925 թ. սկզբներին իր խնդրանքով տեղափոխվում է Լենինական: Այստեղ նշանակվում է գավլուսբաժնի և նոր հիմնված բանֆակի վարիչ-դասախոս: Նա ակտիվ գործունեություն է ծավալում լուսավորության բնագավառում՝ կանոնավորում է դպրոցական գործը, նախաձեռնում ծրագրերի ու դասագրքերի հրատարակումը, համալրում ուսուցչական բանակը երիտասարդ, նոր ուժերով, եղածներին որակավորելու համար ամեն տարի կազմակերպում ուսուցչական դասընթացներ, որտեղ հասարակագիտություն և փիլիսոփայություն էր ավանդում: Նրա ջանքերով դպրոցական նոր շենքեր են կառուցվում քաղաքում, մանավանդ գավառի գյուղերում: Հաճախ է լինում շրջանների դպրոցներում, դասեր լսում, օգնում ուսուցիչներին՝ գաղափարապես, մանկավարժական աշխատանքով, մանավանդ կազմակերպչորեն ու մեթոդապես: Նրա նախաձեռնությամբ հիմնվեց բանֆակ. այն տվեց բազմաթիվ շրջանավարտներ, որոնք դարձան մանկավարժական, կուսակցական ու պետական գիտակից, ակտիվ աշխատողներ:

Կարախանյանը հավատարիմ լենինյան էր: Նա մինչև իր կյանքի վերջը՝ 1931 թվականը, որպես լենինյան կուսակցության անվեհեր զինվոր, անձնուրաց մարտնչեց լուսավորության գործի բարելավման համար, ծավալեց պրոպագանդիստական բեղուն գործունեություն:

Գ. Ա. ՀԱԿՈԲՅԱՆ
*Բանասիրական գիտությունների դոկտոր*

# «Լենինյան ուղիով» ամսագրի 1975 թ. համարներում տպագրված հոդվածների և նյութերի ցանկ



ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ







ՀՈԴՎԱԾՆԵՐ



ՀՍՍՀ-Арм.ССР
им. А. Мясникяна

Адрес редакции: 375033 Ереван-33, Барекамутян, 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

ՎՖ 04201 Պատվեր 2573 **Թղթի չափսը** 70×108 1/16, Տիրաժ 13.600 Գինը 20 կոպ.

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ, Ստորագրված է տպագրության 16/XII-1975 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խանջյան փող. № 28:


## СОДЕРЖАНИЕ

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՏՐԱՆՍՊՈՐՏՅՈՐԸ ՏԵՍԱԿԱՎՈՐՈՒՄ Է

*Փոստային ծանրոցների և ուղերձների արագ առաքումը մեծ մասամբ պայմանավորված է տեսակավորման արագությամբ ու անսխալությամբ:*

*Կիսաավտոմատ տեսակավորման ուշագրավ եղանակ են մշակել դանիական «Կիրսպլանտ» ֆիրմայի մասնագետները:*

*Երկար տրանսպորտյորի երկու կողմերում տեղադրված է մեկուսամաս՝ փաթեթավորման մեծ պարկերով, որոնցից յուրաքանչյուրը ուղարկվում է երկրի որոշակի վայր: Տրանսպորտյորը բաղկացած է առանձին մասերից, որոնք դառնալով աջ և ձախ՝ բեռը նետում են պարկի մեջ: Սարքին սպասարկող ծառայողը, ծանրոցը տրանսպորտյորի վրա տեղավորելու հետ միաժամանակ, սիստեմին հաղորդում է ստացողի հասցեն, հեռախոսի սկավառակի (վահանակի) կամ ստեղների վրա հավաքում տվյալ քաղաքի փոստային ինդեքսը: Այդ սիստեմի արտադրողականությունը ժամում հինգ հազար փաթեթ է:*

## ՓՈՇԵԾԾԻՉ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԻ ՀԱՄԱՐ

*Ավլող սովորական մեխանիկական խոզանակներով մեքենաները հաճախ դառնում են լրացուցիչ փոշու աղբյուր: Այդ է պատճառը, որ այսօր ԱՄՆ-ի Միլուոկի քաղաքի փողոցները մաքրվում են փոշեծծիչով— փոշու և մանր քարեր հավաքող վակուումային արտածծիչ մեքենաներով: Դրանց վրա կարելի է տեղադրել մի քանի տարբեր կցափողեր, որոնց միջոցով փոշին միանգամից հավաքվում է մեծ մակերեսներից ու բոլոր ճեղքերից և անկյուններից:*

*Վակուումային սարքի մոտ կա և շարժակ, որով հավաքվում են թափված տերևները, ավազը, մանրախիճը, փոքր քարերը: Խցի տարողությունն է 8—12 խոր. մետր:*

## ԱՐԱԳ ՄԵՔԵՆԱԳՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*Ճապոնական ֆիրմաներից մեկը թողարկել է «Կվիպի» էլեկտրասարք, որը հնարավորություն է ընձեռում երեք անգամ կրճատելու գրամեքենայի վրա սովորելու ժամկետը: Սարքի տեսողական-ինդիկատորի պանելի վրա վերարտադրվում է մեքենագրվելիք տեքստը: Մեքենագրելիս էկրանի վրայից անհետանում են դրոշմված տառերը, որոնք, սակայն, սխալի դեպքում մնում են:*

*Ուսումնական նյութերը սարքին մատուցվում են փոփոխվող տուփով, որից ականջակալների միջոցով նույնպես կատարվում է հանձնարարված տեքստի հնչյունային վերարտադրությունը:*

## ԻՆՔՆԱԳՆԱՑ ՎԱԳՈՆ

*Կարականդայի «Հիդրոուգլեգորմաշ» ինստիտուտի աշխատողները Վորոնեժի հանքհարստացման սարքավորումների գործարանի կոնստրուկտորների հետ նախագծել են ինքնագնաց վագոն, որի մասսայական թողարկումը կազմակերպված է այդ նույն ձեռնարկությունում: Վագոնի բեռնատարությունը 15 տոննա է, ղեկակառավարումը հիդրոուժեղացուցիչով է, օդով լցված բոլոր չորս անիվներն էլ պտտվող են:*

*Ընդերքի պայմաններում սարքը ծառայում է իբրև ապարների փոխադրիչ՝ հորատանցման կոմբայններից մինչև փոխաբեռնման կետերը:*

*Վագոնի հատակին տեղադրված է բեռակավոր կոնվեյեր, որի օգնությամբ իրականացվում է ավտոմատ բեռնաթափումը: Ինքնագնաց վագոնը էներգիա է ստանում էլեկտրացանցից: Դրա համար օգտագործվում է 250 մետրանոց կաբել, որը փաթաթված է հատուկ թմբուկի վրա:*

*Նոր մեքենան հնարավորություն է ընձեռում մեկուկես անգամ բարձրացնելու բեռնման-բեռնաթափման աշխատանքների արտադրողականությունը:*